ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԳԱՐԱՆ

Է.

# ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՔ ԴԷՊ Ի ՀԱՅՍ

## ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՆԵՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԵՐԻՑ

ԳՐԵՑ

ՆԻԿ. ՄԱՌ

ՊՐՈՖ. ՀԱՅԵՐԷՆԻ Ի ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ ՊԵՏԵՐԲՈՒՐԳԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

ՈՆՈՓՐԻՈՍ ԱՆՈՓԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1892.

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Է.

# ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆԻՑ

ԴԷՊ Ի ՀԱՅՍ

## ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՆԵՐ

ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԵՐԻՑ



ՎԻԵՆՆԱ

*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*

1892.

# ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆԻՑ

## ԴԷՊ Ի ՀԱՅՍ

## ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՆԵՐ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԵՐԻՑ


ԳՐԵՑ

ՆԻԿ. ՄԱՌ

ՈՒՍՈՒՑԻՉԱՊԵՏ ՀԱՅԵՐԷՆԻ Ի ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻՆ ՊԵՏԵՐԲՈՒՐԳԻ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

*ՈՆՈՓՐԻՈՍ ԱՆՈՓԵԱՆ*





ՎԻԵՆՆԱ

*ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ*

1892.

## Ա Ջ Դ

Առաջիկայ հրատարակութիւնս ամբողջական թարգմանութիւն է նշանաւոր հայերէնագէտ ուսուցչապետին ռուսերէն հրատարակութեան,[1] որ նախ երկու անգամով լոյս տեսաւ Ռուսական Հնախօսական Թերթին մէջ: Նոյն թերթին Ե. Տարեշրջանին մէջ դրուած էին ներկայ գրքոյկիս Ա—Թ հատուածները[2], իսկ մնացեալքն Ժ—ԺԶ՝ նոյն թերթին Զ բաժնին մէջ[3]:

Հայերէն թարգմանութիւնս մասն մասն լոյս տեսաւ "Հանդէս Ամսօրեայ", թերթին մէջ[4]: Թարգմանութիւնն ամբողջական է. միայն դուրս մնացած է ԺԶ հատուածին վերջը դրուած[5] համեմատութիւնն Խորենացւոյ բնագրին Էջմիածնի նշանաւոր ձեռագրին հետ:

Գրքոյկիս Թ. հատուածին վերջը դրուած մանրագիր հատուածն[6] յաւելուածոյ խմբագրական դիտողութիւն մըն է Հ. Գրիգ. Վ. Գալէմքեարեանի, որ նոյնութեամբ առնուած է "Հանդիսի", 1891, Թ. 9 թուէն[7]:

---

1 **Н. МАРРЪ, Изъ лѣтней поѣздку въ Арменію. Замѣтки и извлеченія изъ армянскихъ рукописей. Петерб. 1891—92.**

2 Записокъ восточн. отд. имп. русск. археолог. общ. V, стр. 211—241.

3 Записокъ etc. VI, стр. 135—228.

4 Հմմտ. "Հանդէս Ամսօրեայ" Ե. 1891, Թ. 9 (Սեպտ.) էջ 260—272 եւ Զ. 1892. Թ. 8. էջ 231—235. Թ. 9. էջ 268—271. Թ. 10, էջ 303—307 եւ Թ. 11:

5 Записокъ, etc. VI, стр. 160—228, եւ էջ 46—94 ռուսերէն առանձինն հրատարակութեան մէջ:

6 Տես էջ 38—41:

7 Հմմտ. "Հանդէս Ամս." 1891, Թ. 9, էջ 271—272:

# ՑԱՆԿ

# ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆԻՑ

## ԴԷՊ Ի ՀԱՅՍ

## ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՔԱՂՈՒԱԾՆԵՐ

### ՀԱՅԿԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԵՐԻՑ

---

*Դէպ ի Էջմիածին ուղեւորութեանս ձեռնարկեցի Հայկական գրաւոր մատենագրութիւնից առակների եւ առածների նիւթեր ժողովելու նպատակով: Ինչ որ կատարել ու ժողովել եմ այդ խնդրի նկատմամբ, այն ամէնը տեղ կը գտնէ “Հայոց առակների հաւաքածուների մասին„ ուսումնասիրութեանս մէջ, որի վերայ այժմ աշխատում եմ:*

*Հանգստեան ժամերիս գլխաւոր պարապմունքներիցս յետոյ՝ ես նկարագրում էի Էջմիածնի մատենադարանի քանի մի ձեռագրերը եւ նոցա միջից քաղուածներ անում. վերջիններից կազմուած են առաջիկայ դիտողութիւնները: Այստեղ ի միջի այլոց մտան նոյնպէս քաղուածներ Քրիստոսի մանկութեան մասին մի մասնաւոր ձեռագրից, որ շնորհակալութեամբ ընդունեցայ իւր ստացիչ Կարսի հոգեւոր հովիւ Ցուսիկ վարդապետից, որին բախտաւոր դիպուածը պատահեցրեց ինձ Անիի աւերակներում:*

*Ես Անի գնացի արդէն Էջմիածնում աշխատանքներս վերջացնելուց յետոյ: Աւելի եւս կանուխ կատարեցի շրջագայութիւններ մօտակայ նշանաւոր վայրերն, այսպէս օրինակ Սեւանայ վանքը՝ Սեւանայ լճի (Գէօգչայ) վերայ, ուր եւ կազմեցի վանքի ձեռագրերի ցուցակը, որը լոյս կը տեսնէ սոյն իսկ*

էջերի վերայ Էջմիածնի տասը ձեռագրերի նկարագրութեան հետ միասին։

Էջմիածնում կրօնաւոր Գալուստ Մկրտչեանի էական օգնութեամբ յաջողեցաւ ինձ համեմատել Մովսէս Խորենացու տպագրուած բնագիրը Սարգիս Սրբազանի ձեռագրի հետ, որի մասին խօսք կը լինի ներկայ նկատողութիւններից մէկի մէջ։

Ահա այն ամէնը, ինչ որ կարողացայ անել իմ Էջմիածնում եղած աւելի քան երկու ամիս ժամանակամիջոցում — Մայիսի սկզբից մինչեւ Յուլիսի կէսը։ Բաց ի սորանից, Էջմիածին լինելս իմ անձի համար շատ կողմերից խրատական էր, եւ եթէ մի ցանկալի բան կայ, այդ ուղեւորութեանս կրկնութիւն է. երկու երեք ամիսը շատ կարճ ժամանակամիջոց է քանի մի հազար ձեռագրերի հաւաքածուի հետ ծանօթանալու եւ ամէն կարեւոր բաները դուրս բերելու համար. բայց եւ այն ինչ որ կարողացայ անել, կախումն ունէր այն մեծ յարմարութիւններից եւ պարապմունքների պատշաճ գեղեցիկ պայմաններից, որոնց մէջ գտնուեցայ իմ Էջմիածին ոտք կոխած առաջին իսկ օրից, որի համար քաղցր պարտք եմ համարում յայտնել խորին շնորհակալութիւնս Էջմիածնի Ճեմարանի ուսուցիչ Յ. Ն. Յովհաննիսեանին, Ճեմարանի տեսուչ Նահապետ աբեղային, Ներսէս եպիսկոպոսին, Ղեւոնդ վարդապետին, Մատենադարանապետ Հ. Սահակին եւ ընդհանրապէս Էջմիածնի բոլոր Միաբանութեան, որոնք այնքան քաղցր եւ ուշադիր են դէպ ի իւրեանց հիւրերը՝ մանաւանդ հայ հնութիւններով հետաքրքրուողները։

Այստեղ եւս յարգանքով արտայայտում եմ խորին երախտագիտութեան զգացմունքս Նորին Սրբազնութիւն ամենայն Հայոց Կաթողիկոս Տ. Տ. Մակարին, որ բարեյօժարութեամբ հաճեց Էջմիածնի գրքերի գանձարանը իմ կամքին թողնել անպայման աղատ կերպով օգտուելու համար։

## Կրճատումներ։

1. Տպ. = տպագրուած. 2. Ձռգր. = ձեռագիր. 3. Էջմ. = Էջմիածին. 4. Ցուցակ = Ցուցակ Սեւանայ վանքի ձեռագրերի Էջմիածնի տառը ձեռագրերի նկարագրութեան հետ միասին։

Առաջ բերուած ձեռագրերի մօտ արաբական թուանշանների խումբը լատինական տառի հետ միասին ունի հետեւեալ նշանակութիւնը. — արաբական թուանշանը ցոյց է տալիս թերթը, իսկ լատինական տառերը՝ a — թերթի առաջին էջը, b — երկրորդը եւ այլն։ Եթէ այսպիսի մի խմբի դիմաց դրած է նոյնպէս մի հայկական տառ, այն ժամանակ վերջինը ցոյց է տալիս ձեռագրի հայկական paginationը, այսինքն՝ ձեռագիրը կազմող տետրակներից մինը. արաբական թուանշանը այդ դէպքում ցոյց է տալիս այն տետրակի թերթը, իսկ լատինական տառերը — այն թերթի էջը։

Ես դնում եմ Էջմ. ձռգրերի ճշգրիտ համարները Էջմիածնի մատենադարանի ձեռագիր ցուցակի, եւ ոչ թէ 1863թուի տպագրի համեմատ (Մայր ցուցակ, եւն. Թիֆլիզ). միայն ձեռագրի նկարագրութեանս մէջ (Ցուցակ եւ այլն) տպագրուած ցուցակի համարները դրուած են փակագծում իսկականների հետ միասին։

## Ա.

"Նկարագրելով Սեւանայ վանքի ձեռագրերը՝ ես նայում էի Ցայսմաւուրքներում "Բաղաամի եւ Յովասափի„ արձակ[1] քերթուածը։ Ինը ձեռագրից

---

[1] Այս քերթուածը հրատարակուած է եղել հնատիպ Ցայսմաւուրքներում. տպագրուած օրինակից օգտուել է եւ Մ. Ռեապինին. "Կալիլակ եւ Դիմնակ գիրքը,„ Մոսկուա. 1889. էջ LXXXIII. ծանօթ. 141. սակայն ի զուր է առում (անդ) պ. Ռեապինին գազանից հալածուած մարդու առածի աւթիւ, որ իբր թէ հայկական քերթուածում այդ առածի մէջ փոխանակ փղի՝ շատ անճահ կերպով եղջերու է գրուած։ Եղջերու բառի սեռական հոլովը կը լինէր եղջերուոյ, իսկ բնագրում գրուած է եղջերէն. որը կարող է լինել [մի] եղջիւր, յունական μονοκέρωτος համազօր բառի սեռականը. ձեռագրերում, ի միջի այլոց Էջմ. Թ. 1755, այդպէս էլ կայ միեղջերոյ. բայց սեռա՛կան հոլովի միւս ձեւով — միեղջերուոյ։

(Թիւք 32—40) իմ որոնած հոգեշահ վէպը գտնուեցաւ երեքի մէջ — Թիւք 33, 35 եւ 37. վերջինի մէջ թերի, որը, նայելով լուսանցքի ծանօթութեան, առաջ է եկել բնագրի պակասաւորութիւննից, որ տեղից որ օրինակուած է: Թիւք 32 եւ 38 ձեռագրերում վէպը բոլորովին կը պակսի. 34, 36 եւ 39 թուերում նոյնպէս չկայ, բայց շատ կարելի է այն պատճառով միայն, որ ամէնքն էլ ի վերջոյ թերի են. իսկ Բաղաամի եւ Յովասափի պատմութիւնը հայկական աւելի հին Յայսմաւուրքներում, այսպէս կոչուած Մայր Յայսմաւուրքներում, ինչպէս են եւ Սեւանայ օրինակները, սովորաբար զետեղուած են լինում վերջին էջերում իբրեւ յաւելուած:

Սեւանի երկու ձեռագրերի մէջ[1] Բաղաամի եւ Յովասափի վէպի վերջում գտնւում է յիշատակարան վէպի հայ թարգմանչի անունով. այդ յիշատակարանը աւելի լաւ պահպանուած է այդ իսկ վէպի վերջում Էջմիածնի ձեռագրի մէջ Թ. 1755՝[2] գրուած 1441 թուականին:

"Զոր եւ [ես] Առատ մեղաւոր ծառայս աստուծոյ բազում աշխատութեամբ եւ ջանիւ փոքր ի շատէ ծայրաքաղ արարեալ թարգմանեցի զայս ի հայ լեզու ընդ ձեռամբ իշխանի միոյ Բագրատունեաց պատուաւորի" եւն:

Սեւանի "B եւ I" օրինակների մասին հարկ է նկատել նոյնպէս, որ երկու պատկերազարդ ձեռագիր Յայսմաւուրքներում Թ. 33 եւ 35 լուսանցքների վերայ վէպի բնագրի սկզբին՝ կայ Հնդկաց արքայորդի Յովասափի պատկերը:

---

[1] Թ. 33 ձռգրում, նորոգուած Հ. Թ. 1143, այսինքն 1684 թուին եւ Թ. 35 ձռգրում, գրուած Հ. Թ. 1089, այսինքն՝ 1640 Թ.: Տես Ցուցակը:

[2] Տես Ցուցակը:

## Բ.

Տպագիր Խորենացու եւ Սարգիս Սրբազանի ձռ.գրի համեմատութիւնը, որը մեծապէս ինձ պարտաւորեց թողնելով ձեռագիրը իմ կամքին օգտուլու նրանից, առանձին կը տպագրուի: Այստեղ միայն այսքանս կը նկատեմ, թէ ձռ.գիրը, ի դէպ ասած, որը պարունակում է Ասողիկի, Արիստակէս Լաստիվերտացու աշխատութիւնները եւ Մ. Խորենացու Աշխարհագրութիւնը, գրուած է մագաղաթի վերայ՝ բնագրի միտքը բնաւ չհասկացող եւ տառերը մեքենաբար ընդօրինակող մի անձի ձեռքով. արտագրողի սխալներից պարզուեցաւ, որ նա իւր ձեռքում ունէր երկաթագիր օրինակ: Եթէ գրիչը բոլորովին անպատրաստ եղած չլինէր իւր գործին, մենք կ՚ունենայինք գեղեցիկ զանազան ընթերցուածների մի շարք. սորա մասին կարելի է դատել այն մի քանի օրինակներով, որոնք անվնաս հասած են "Բազմամեղ եւ չարագործ երէցորդի Ներսէսի" ձեռքով, ինչպէս կոչում է իրեն ընդօրինակողը:

Բաւականանում եմ լոկ ընթերցանութեան մի օրինակով: Մ. Խորենացու Բ. Գրքի երկրորդ գլխի սկզբին ընդունուած ընթերցուածը այսպէս է. "Որպէս ասացաք, յետ վաթսուն ամի մահուանն Աղեքսանդրի թագաւորէ ի վերայ Պարթեւաց Արշակ քաջ ի քաղաքին, որ կոչի Բահղ Առաւատին յերկիրն Քուշանաց:" Էմինի ռուս թարգմանութեան մէջ. "Ինչպէս մենք արդէն ասացինք, Աղեքսանդրի մահուանից վաթսուն տարի յետոյ Պարթեւաց վերայ թագաւորեց քաջն Արշակ Բահլ — Առաւատին քաղաքում — Քուշանաց երկրում:"

"Մեր ընթերցողները կարող են նկատել, — ասում է այդ տեղի առիթով գիտնական թարգմանիչը[1], — որ Մովսէս Խորենացի Պարթեւաց քա-

---

[1] Н. Эминъ, Исторія Арменіи Моисея Хоренскаго, ծան. 139, էջ 280:

ղաքը անուանում է Բահլ-Ա[illegible]պէն։ Այս վեր-ջին բառը առանց երկմտութեան ընդունում է գիտնականներից եւ գրուում որպէս յատուկ անուն միայն նորա համար, որ այդպէս է գրուած ձեռա-գիր օրինակներում։ Մենք ընդունում ենք այդ բա-ռը իբրեւ ածական եւ վճռում ենք տալ նորան մեր մեկնութիւնը, թէեւ այդ մեկնութիւնը իւր նորութեամբ փոքր ինչ թերեւս համարձակ թուի։„

Մ. Էմին առաջարկում է ուղղել Ա[illegible]պէնը, որպէս սխալ ընթերցմունք, պարտական իւր ծագումով գրիչներին, աւելի ճշգրիտ եւ պատշաճ ընթերցուածի — Ա[illegible]պէնի, որը առաւօտեանի, աւելի եւս լաւ՝ արեւելեանի միջով լիովին պատ-շաճ է Բահղ քաղաքին։ Եւ ահաւասիկ Մ. Խորե-նացու նոր օրինակում ճիշտ որ Ա[illegible]պէն է, փո-խանակ Ա[illegible]պէնի։

Գ.

Խօսք բանալով մի անգամ Հայոց Պատմու-թեան հօր վերայ, կ՚օգտուիմ դէպքից յայտնելու իմ ենթադրութիւնը մի տեսակ երգերի մասին, որոնք յիշուում են Մ. Խորենացու մօտ — եւ ի նկատի ունիմ Երգք Թմբկաց։ Իմ կարծիքը չէ տալիս վերջնական պարզաբանութիւն, բայց միայն որոշում է այն նշանակութեան բնաւորութիւնը, որը կարող են ունենալ յիշեալ երգերը. եւ հի-մնուած է (իմ կարծիքը) մի մերձեցման վերայ։ Յայ-տնի է որ Մ. Էմին (Վէպք հնոյն Հայաստանի[1], էջ 19. ծան. 19, եւ Պատմ. Հայ. Մ. Խոր. էջ 272, ծան. 112) համարում է նրանց ժամանակագրական

---

[1] Այս աշխատութիւնը մտաւ նոյն հեղինակի վերջին հետազօտութեան մէջ "Մ. Խոր. եւ Հայոց հին վէպը„ գրուած ռուսերէն 5դ. հնագիտական ժողովի առթիւ Թիֆլիզում 1881 թ.։ Այս վերջին հետազօտութիւնից կատարուած են երկու թարգմանութիւն նոր աշխարհիկ լեզուով. Գ. Խ. III. Յաւելուած Արշալոյս Արարատեանի, Մովսէս Խորենացին եւ Հայոց հին վէպերը, Թիֆլիզ 1886 եւ Խաչ. Յովհաննիսեանց, Մովսէս Խորենացի եւ հին հայկական վէպ. Թիֆլիս 1887։

երգեր. Դիւլորիէ (Journ. Asiat. 1852 vol. XIX. էջ 27) ընդունում է նրանց որպէս չափական երգեր։ իսկ Մխիթարեանները իտալական Tomaséoի թարգմանութեան ծանօթութեան մէջ (էջ 82,)[1] ենթադրութեամբ կոչում են նոցա յանգական (rimato od in versi), իսկ բնագրում թարգմանած են canti delle tradizioniով։ Թուելիք բառը ես յառաջ եմ բերում Թուել բայից. այս երկու բառերը Հայկական հին քերթողութեան մէջ, ըստ երեւութին, ունէին առանձին նշանակութիւն եւ ցոյց էին տալիս ստանաւոր յօրինելու կամ արտասանելու եղանակներից մէկը, բայց թէ նոքա երգելով կարդալո՞ւն, պատելո՞ւն, թէ պերճաբանութեան (declamation) էին վերաբերում, չեմ կարող ասել։ Մինչեւ իսկ չեմ վստահանում այս բառը մերձեցնել Թիւ բառին, որ եկեղեցւոյ պաշտամանց գրքերում որոշեալ տեղերում գրւում է, որոնք չեն երգւում, այլ մի տեսակ recitatifով ասւում են. կարծում եմ, թէ բաւական կը լինի, եթէ յաջողւի ինձ ցոյց տալ Թուել բայի գործածութեան գէթ մի դէպքը — որից, իմ կարծիքով, յառաջ է գալիս Թուելիք, իմ ցոյց տուած նշանակութեամբ։ Մենք՝ զոր օրինակ, ունինք Մ. Խոր. մէջ Ա. լա. “Եւ կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին։„

Ճշմարիտ չէ՞ արդեօք, որ եթէ փոխանակ Երգէին՝ բնագրում գրուած լինէր Թուէին, այն ժամանակ իմ ցոյց տուած Թուել բայի առանձին գերը Հայոց հին քերթողութեան մէջ բաւական պայծառ կ'երեւէր այդ տեղից, եւ միեւնոյն ժամանակ Երգք Թուելեաց խօսքերը մեզ փոքր մի հասկանալի կը լինէին։ Եւ Թուել բայի մի այսպիսի գործածութեան

[1] Այս (Թիւ) բառի բացատրութիւնը Հայկազնեան բառարանում միայն երկու վկայութիւններով (իբր առանց եղանակի երգոց) թէ թերի է եւ թէ լիով արտայայտուած չէ։

տեղ՝ մենք արդարեւ ունինք Մովսէս Խորենացու մօտ Բ. ը., ուր մենք կարդում ենք.

«Բայց եթէ կամիս, սակս եւ ես յաղագս Նորա անյաղթ եւ փցուն, որպէս Պարսիկք վասն Ռոստոմայ Սագճկի[1] Հարիւր եւ քսան փղաց ոյժ ասեն ունել։ Քանզի կարի իմն անյարմար ձայնէին նմա երգ բանիցն[2] վասն ուժեղութեանն եւ սրտեայ լինելոյն. որում ոչ Երակլեայ եւ ոչ Սագճկին յարմարին այս զրոյցքս։[3] Քանզի երգէին նմա բուռն հարկանել զորձաքար վիմաց ձեռօք ուրոչ գոյր գեղութիւն, եւ ճեղքել ըստ կամաց մեծ եւ փոքր„ եւն։

Ես գիտութեամբ ստորագծեցի ձայնէին բառը. չեմ պաշտպանում այդ, ինչպէս եւ յանձն

---

[1] Բնագրում գրուած է Սագճիկ. եւ Մ. Էմին այդ առթիւ նկատում է (Ист. Арм. М. Х., էջ 286, ծան. 168.) "Դժուար է որոշել, թէ ինչու համար Ռոստոմը կամ Ռուստեմը մեր հեղինակի մօտ կոչւում է Սագճիկ։ Ֆիրդուսիի մօտ չկայ այս վերջին անունը„։ Հազիւ թէ սխալուած կը լինիմ, եթէ ասեմ, որ Սագճիկը իրանական հերոսի մականունն է ըստ ծննդեան տեղւոյն՝ կազմուած իկ ածանցով, ինչպէս պարս-իկ հնդ-իկ եւայլն, Սագճ բառից, նա է Ռուստեմի հայրենիքի (Սեիստան) անունը, որը Պարսից լեզւում պատահում է سکزیستان ձեւով էլ։ Ֆիրդուսին եւս ընդհանրապէս Սեիստացուն կոչում է سکزی, այդպէս էջ 999, տող 4. հրատ Վուլլերսի։

[2] Երգ բանիցն — հայց. հոլով առանց զ նախդրի։ Բանաւոր երգերի միտքը մինչեւ այժմ բաւականացուցիչ կերպով նոյնպէս չէ պարզաբանուած. այդ արտայայտութեան մասին գոյութիւն ունեցող պարզաբանութիւններին թոյլ եմ տալիս ինձ, թէեւ անվստահութեամբ, աւելացնել մի ուրիշն էլ. արդեօք կոչուած չե՞ն այդ երգերը Բանաւոր առանց խօսքերի երգերից զանազանելու համար, այսինքն, որոնք միայն եղանակ ունեին։ Կովկասում-Ջուրխայում առանց խօսքերի երգեր երգւում են այժմս էլ։ Նոքա խմբական են։

[3] Զրոյց, ի հարկէ գործ է ածւում Հայոց լեզւում, եւ նոյն իսկ Մ. Խ.-ի մօտ (տես Էմին. Վէպք եւայլն. էջ 7—8 եւ Dulaurier յ. տ., էջ 8—11), հետեւաբար մտքով, բայց եւ այս դէպքում վար չի դուրս գալ եւ նորա նախնական նշանակութեամբը, որովհետեւ զրոյցը կապ ունի, ըստ երեւութին, պահլ. srûdan (երգել) հետ, եւ պարս. سرود (երգ) հետ։

չափ ճշգրիտ կերպով բացատրել Երգ+ Ռոսելեաց խօսքերի իմաստը։ Կամեցայ միայն իրեն իսկ Խորենացու խօսքերի հիման վերայ վերականգնել Ռոսելեաց սասցուածի եւ Ռոսել բայի ստուգաբանօրէն անհնարին կապակցութիւնը։

Այսպիսի թուելեաց երգերից մինը (Մ. Խ. Ա. Լ.) առաջարկում եմ սորբեւ իմ ընթերցանութեամբ եօթնոտեան չափով, ի հարկէ դուրս ձգելով պատմաբանին պատկանող "այլ եւ" եւ "ասեն" բառերը, ինչպէս եւ վերականգնելով սկզբնական քերականական կազմութիւնը՝ փոփոխուած միջանկեալ ասէն բառի պատճառով։

"Ճաշ գործեալ Արգաւանայ
Ի պատիւ Արտաշիսի
Խարգաւանակ լեալ նմին
Ի տաճարին վիշապաց։"

Յաջորդ տողերը շատ փոփոխուած են դարձեալ կախում ունենալով ասէնից, թէեւ նոցա մէջ եւս կարելի է նշմարել չափը, բայց մնացեալ տաղաւորները պահպանուած են անարատ կամ գրեթէ անարատ։

"Նա անց գնաց եւ շինեաց
Ի մէջ Մարաց զՄարակերտ։"

Եւ յետոյ։

"Տենչայ Սաթենիկ տիկին
Տենչանս զարտախուր խաւարտ.
[Տենչայ] եւ զտից խաւարծի
Ի բարձիցն Արգաւանայ։"

Դ.

Մովսէս Խորենացու աշխատութեան բնագիրն ընթերցողը կը յիշէ անշուշտ հին հայկական երգի թանկագին հատուածը.

"Դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս.
Զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի Մասիս.

Անդ կացցես եւ զլոյս մի տեսցես[1]:»

Շտապում եմ արդարացնել գիտակների առաջ ականջի համար խորթ ընթերցմունքը. ես բաց թողեցի հատուածի սկզբի Եթէ բառը, որը Մովսէս Խորենացու թարգմանիչները փոխադրել են Եթէ (если) բառով. բայց Եթէն ոչ թէ միայն նշանակում է Եթէ (если) այլ եւ որ (что), եւ դրանով ասել բայից յետոյ առ հասարակ սկսւում է լրացուցիչ նախադասութիւնը, նոյնն է եւ իմ կարծիքով ներկայ դէպքում ասէ այսպէս բառից յետոյ: Բնագրի միտքն եւս թոյլ չէ տալիս Եթէն թէականաբար առնել: Մենք այստեղ գործ չունինք հանդարտ կերպով մեռնող հօր խօսակցութեան հետ, որը օրհնում է որդուն եւ խրատում է զգոյշ կենալ օրհասական վայրից, որ եթէ նա երթայ Մասիս, դեւերը կը գերեն նորան: Այդպիսի բան չկայ այս տեղ: Ամբողջ հատուածը հօր ուժգին կերպով արտայայտած անէծքն է, որ վշտացած է եւ մինչեւ սրտի խորքը յուզուած որդու խստասիրտ յարաբերութեան եւ անագորոյն խօսքերի համար եւ հայրը անիծում է որդուն անպայման, առանց որեւէ չափաւորութեան, եւ ոչ թէ միայն այն դէպքում, երբ նորա միտքն ընկնի բարձրանալ Մասիսի վերայ:

Նոյն իսկ ապառնի ժամանակի գործածութիւնը հայրական անէծքին տալիս է չարագուշակ մարգարէութեան կնիք, մի բանի, որ անխուսափելի կերպով պէտք է կատարուի: Առաւել դժուար է բաժանուել ի վեր բառից, որը ես պահպանում եմ միայն առաջին տողի մէջ. — ազատ ի վեր ի Մասիս: Ապաքէն այնքան ընտելացել է մեր ականջը այդ ի վեր բառին, այնպէս նա ժողովրդական է թւում, որ ակամայ ցանկալի է լինում կրկնել նորան եւ երկրորդ տողի վերջում, ուր եւ իսկապէս նա կայ թէ՛ ձեռագրերում եւ թէ՛ հրատարակու-

---

[1] Մ. Խոր. Բ., կա:

թիւններում։ Սակայն ուշադրութիւն դարձնենք բնագրի վերայ. «անդ կացցես եւ զլոյս մի տեսցես», նախադասութիւնը ես հասկանում եմ, ինչպէս եւ ամէնքը, բառացի, առանց ոեւէ այլաբանութեան «այնտեղ կը մնաս եւ լոյս չես տեսնել»։ Ո՞ւր Արտաւազդը լոյս չի տեսնել։ Ազատ Մասիսի վերայ։ Միթէ Արարատ լեռան վերայ լինելով կարելի չէ՞ր լոյս տեսնել։ Եթէ անձեռնմխելի թողնենք մեր բնագիրը, այն ժամանակ հարկ կը լինի թոյլ տալ մի այսպիսի տարօրինակ երեւոյթ։ Այդ տարօրինակութիւնը, ինչպէս երեւում է, զարմացնում էր եւ ուրիշներին[1], որովհետեւ, կարծես թէ դորա բացատրութեան համար դիմում էին ներկայ դարի առաջին կիսի մատենագիր Մեսրոպ Թաղիադեանի վկայութեանը, որը ասում է (Ճանապարհորդութիւն. Կալկաթա 1847, Ա. էջ 1847) թէ Երեւանի բնակիչները այժմ էլ Մասիսին կոչում են մութն աշխարհ։ Ես կարող եմ այլ եւս ցոյց տալ, որ Հայերի մօտ յաճախակի պատահում են թէ՛ իրականութեան եւ թէ՛ հեքիաթների մէջ խաւարոտ կամ սեաւ անունով լեռներ. բայց այդ անունները հազիւ կարող են կապ ունենալ լեռների վերայ գտնուած լուսոյ առատութեան կամ պակասութեան հետ, եւ գլխաւորը՝ ոչ մի յարաբերութիւն չունին Խորենացու իւր պատմութեան մէջ հինգերորդ դարում մտցրած երգի հատուածի հետ[2]։ Սորանից զատ թողներով երկրորդ ոտանաւորում է Մասիս բառի

---

[1] Մ. Էմին, Վէպք հնոյն Հայաստանի, էջ 44 եւ Dulaurier, Journ, As. XIX, էջ 50. note 2.

[2] Եթէ այս անունը հին համարենք, այն ժամանակ նա կարող է առանձին նշանակութիւն ստանալ գուցէ պահլ. tīrak բառի հետ կապուելով, որ դիւցաբանական Haraiti (= Ararat?) Barĕza լեռան գագաթներից մէկի անունն է, եւ եթէ միայն թոյլ տանք որ վերջինիս — تیره մութ, պարսկական ժողովրդական ստուգաբանութիւնը Հայոց յայտնի էր։ Հայոց մութ լեռների մասին տես St. Martin. Mém. sur l'Arm. I p. 47, եւ II p. 176.

առաջ է վէրը, մենք կը հանդիպինք մի ուրիշ ոչ ինչ պակաս անտեղութեան կամ ապօրինակութեան, այսինքն՝ մի տեսակ պառաւական բազմաբանութեան. Հատուածը այս միտքը կը տանայ, թէ Արտաւազդը կ՚երթայ որսի Մասիսի վերայ, եւ քաջերը կը տանին նորան Մասիսի վերայ։ Եթէ Արտաւազդը ինքը կ՚երթայ Մասիսի վերայ, էլ ուրիշ ի՞նչ Մասիսի վերայ կը տանեն քաջերը։ Մինչդեռ իմ առաջարկած ուղղագրութեամբ այդ բոլոր անտեղութիւնները կը վերանան, անէծքի իւրաքանչիւր խօսքը իմաստ կ՚ընդունի եւ կը բերէ մի ինչ որ նոր օրհասական դրութիւն, եւ մանաւանդ թէ կը տանայ չափ, որի գոյութեան մասին հայկական հին քերթողութեան մէջ՝ թող դատէ գործին ծանօթ ընթերցողը։ Իսկ թարգմանութեամբ այդ հատուածը այսպէս կլլինի.

Կու կ՚երթաս ազատ Մասիսի (Արարատի) վերայ
Ոգիները քեզ կը բռնեն, կը տանեն ազատ Մա-
սիսի խորքը (խոռոչը)
Այն տեղ կը մնաս եւ լոյս չես տեսնել։

Ճշմարի՞տ է արդեօք, որ քաջք ասելով պէտք է հասկանալ չար ոգիներ, եւ ոչ՝ քաջարիներ, ինչպէս այդ կամենում էր Փլորիվալ (Hist. d'Armén., Paris, II p. 291) եւ յետոյ Դիւլորիէ (անդ, էջ 50)։ Այդ խնդիրը շատ հիմնաւոր կերպով վճռել է ոգիների օգտին Մ. Էմին. (Վէպք հնոյն Հայաստանի, էջ 44 ծան. 59 եւ Ист. Арм. М. Хор. ծան. 289, էջ 299—300). այլ եւ յիշելով հին ձեռագիր բառագրքերի բացատրութիւնը եւ ցոյց տալով քաջակալ բառը, պատուարժան հայագէտը յենուում է նոյն բառի նշանակութեան վերայ եւ Վրաց լեզուում. սակայն պէտք է նկատել, որ նոյն իսկ Հայոց մէջ քաջ բառի ոգի առմամբ գործ էր ածուում. դեռ եւս ԺԴ դարում Հայոց քարոզիչները պէտք է հա-

շիւ տեսնէին քաջերի[1] վերայ եղած սնապաշտական զրոյցների հետ, որոնք տարածուում էին ժողովրդի մէջ։ Այս մտքով մի հետաքրքրական տեղ կայ Վարդանի "Հարցերի եւ Պատասխանների" մէջ[2] որն եւ քաղում եմ Էջմ. Թ. 453 ձեռագրից, գրուած 1628 թ.[3] դա բովանդակում է եւ ժողովրդական աւանդութիւնը Արտաւազդի մասին, որը բանտարկուած է Մասիսի մէջ եւ պիտի ազատուի գեղեցիկ օր մի աքսորից եւ գերէ ողջ տիեզերքը[4]։

"Հարցուած. Ապա զի՞նչ է, որ բազումք ասեն թէ քաջք պատերազմունս մղեն. եւ զօրս երէոց որսան. եւ զարմտիս կալոց կրեն. եւ զգինիս ի հնձանաց կրեն եւ առնուն. եւ վիշապք զտոհմականս յանդէոց (կարդա՝ յանդոց)[5] ծծեն. եւ յոլով մարդիկ տեսեալ. զի վիշապք վերանան յերկրէ յերկինս։

Պատասխանի. Այսպիսի յիմարութեամբ լցեալ է երկիր. միթէ արժա՞ն է այսպիսի ասացօղան քրիստոն(ե)այս համարել. եւ կամ բնաւին առ մտաւորսն. ոչ քաջ լեալ է եւ ոչ վիշապ. վիշապդ ա-

---

1 Հայոց մեծ բառարանում այդ բառի առաջ Մխիթարեանները բերում են վկայութիւններ միայն Ներսէս Շնորհալուց, Վիպասանութիւն. (Վենետիկ 1830. էջ 511) եւ եկեղեցական կանոններից։

2 Վարդանների եւ նոցա վերագրուած աշխատութիւնների մասին իմ կողմից առանձին քննութիւնն կը լինի։ Կը բաւականանամ այստեղ մի նկատողութիւնով, որ երկու Վարդանները — Մեծն Վարդանը եւ Վարդան Այկեակցին եթէ միեւնոյն անձերը չեն, այնու ամենայնիւ գոնէ ժամանակակից են, որով աւելի եւս խճճանք է մտնում այդ գործի մէջ։

3 Տես Ցուցակը։

4 Այս հաւատքը ունի եւ Խորենացի (Բ., կա.) եւ ուրիշները. բայց շարունակութիւնը արտայայտելիս Վարդան կրկնում է Եզնիկին (Ա. իե. էջ 99—107 Վենետ. հրատ. 1826)։

5 Ձեռագրում գրուած է յանդէոց, կարծում եմ, սխալմամբ՝ փոխանակ յանդոցի։ Եզնիկի մօտ — արդեանց. տես նոյնպէս Գարագաշեան, քննական պատմ. Հայոց եւն. էջ 277։

նուն բառ է. զի որ ինչ երկրի մեծ լինի՝ վիշապ ասեն. ըստ գրոց՝[1] թէ "դու փշրեցեր զգլուխ. եւ ետուն„[2]: Որ նշանակէր զՓարաւոն փշրեալ ի Կարմիր ծովն. եւ զզէնս եւ զզարդ նոցա յալեաց եզր ծովուն գտեալ. եւ ի ձեռն լեղորդացն ի խորոն անկաւ յաշխարհն Հնդկաց. նա էր վիշապն. որպէս մարդ մեծանձնեա յաղթանդամ ասի. եւ թէ ուղեղ է զոր ասեն, ցորեան եւ գինի առեալ գիւացն. սակայն ոչ ուտեն եւ ոչ ըմպեն. եւ ոչ ի տեղւոյն շարժին. այլ երեւոյթս իմն տան. միթէ հրեշտակքն զոր մատուցանէին նոցա կերակուր, որպէս Մանուէլ եւ Գեդէոն, կերա՞ն. անմարմնոյ բնութիւն զիա՞րդ կերակրի զմարմնական կերակուր. գէթ լոկ երեւոյթս տան:„

„Հարցուած. իսկ ընդէ՞ր ոք ասպա ասեն. տեսեալ ոմանց քաջաց վիշապաց տաճարս ի լերինս բարձունս եւ բնակութիւնս. ուր եւ զԱղէքսանդր կապեալ ունին ի Հռոմ. եւ զԱրտաւազդ . . . ի Մասիս. եւ զԵրուանդ ի գետս եւ ի մռայլս:„

«Պատասխանի. ոչ Աղէքսանդր կայ կենդանի ի կապանս. եւ ոչ Արտաւազդ եւ ոչ այլ ոք յառաջնոց անտի. զի յորդոց մարդկան Ենովք եւ Եղիայ միայն կենդանիք են. այլ ամենեցուն զմահ ճաշակեալ է. բայց մոլորութիւն դիւաց խաբեաց զկռապաշտսն Հայոց ի ձեռն քրմացն որք ասէին. թէ զԱրտաւազդ ոմն վիշապ(ք) արգելեալ են կենդանի ի Մասիս լեառն. ի նա (կարդա՝ եւ նա) ելանելոց են (կարդա՝ է) եւ զաշխարհս ունելոց. եւ ոմն այլ(ա)մտաց ունէր զիշխանութիւն Հայոց. զարհուրեալ հարցանէր զղձայս որում դիւաց. եւ զկա-

[1] Նոյն տեղը սաղմոսի ռուս թարգմանութեան մէջ այսպէս է. (74, 14) "Ты сокрушилъ голову левіаоана, отдалъ его на съѣденіе обитателямъ пустыни„, սլաւոնեբէնի մէջ (73, 14) "Ты сокрушилъ еси главу змiеву, далъ еси того брашно дюдемъ эоіопскимъ„.

[2] Սաղմ. Դաւթի ՀԳ. 14. Դու փշրեցեր զգլուխ վիշապին եւ ետուր զնա կերակուր զօրացն Հնդկաց:

խորդան. թէ ե՞րբ լինի Արտաւազդայ ելանելն ի կապանացն[1]: Եւ նոքա ասեն ցնա. թէ ոչ կամիս զելանելն նորա ի կապանաց. հրաման տուր ընդ ամենայն աշխարհս դարբնացն որ ի նաւասարդի օրն որ ամենայն դարբին կոբէ (այս ինքն՝ կոփէ) կռանաւն ի վերայ սալին իւրոյ. եւ երկաթն[2] Արտաւազդայ անդրէն հաստատի. եւ կատարեն զնոյն հրաման այժմ ամենայն դարբին. որ ի նաւասարդի կռանաւ հարկանէն զսալն մինչեւ ցայսօր. եւ զայս ստութիւնս արձանացոյց սատանայ յաշխարհս. նոյնպէս եւ զվիշապ որ է օձ մեծ առաջօք (կարդա՝ առ աչօք) ցուցանէ. զի ահագին երեւեալ՝ մարդիկ ի պաշտօն առնուցուն զօձն. որպէս արարին Բաբելայիք եւ Եղլադացիք. զվիշապ օձսն պաշտեցին եւ յաստուծայ հեռացան:„

## Ե.

Անհաւատալի է թւում, որ Հայերը չունենային գրականութիւն, դորա հետ միասին եւ նշանագրեր իրենց քրիստոնէութիւն ընդունելուց եւ Մեսրոպի՝ Հայոց նոր կրօնական ուսման պիտոյքների համար այբուբենի հնարելուց շատ տարիներ առաջ: Իսկ առաջին թարգմանութիւնները, որ գրուած էին մեսրոպեան նշանագրերով, պարունակում են գրականական բոլորովին մշակուած լեզու, որը օրինակ դարձաւ յետագայ բոլոր դարերի մատենագիրների համար: Մինչդեռ ազգային աւանդութիւնը կարծես թէ ժխտում է, որ Հայերը նախ քրիստոնէական շրջանում ունեցել են գիր: Արդեօք չափազանց չե՞նք վստահանում քրիստոնեայ, եւ այն էլ առաջին դարերի հելլենասէր ուսուցիչ-

---

[1] “Ի կապանաց„ կարելի է թարգմանել եւ “կրճերից„. բայց այստեղ “կապանք„ կապ ունի “կապեալ ունին„ի հետ. տես վերը երկրորդ Հարցուածի բնագիրը:

[2] Բնագրում “երկաթ„ է ասուած, այսինքն “երկաթի շղթաներ„, որոնցմով կաշկանդուած է Արտաւազդ, կամ երկաթէ սիւն, որին կապուած է նա:

ների վկայութեանը՝ հեթանոս Հայոց վերաբերմամբ, որոնք առաւել սերտ հաղորդակցութիւն ունէին Իրանի հետ։ Ցանկալի կը լինէր ի մի ժողովել այդ հարցին վերաբերեալ և՛ հնագոյն և՛ նորագոյն տեղեկութիւնները[1] քննադատօրէն հաստատուած իրողութիւնների վերայ մի ուղիղ տեսութիւն հաստատելու համար։ Մէջ եմ բերում այստեղ Մեծն Վարդանի Սուրբ Գրքի մեկնութիւնից մի քանի տող, որից մենք ծանօթանում ենք, թէ ինչպէս էին նայում այդ խնդրի վերայ ԺԳ. դարում։ Վարդան կարծում է, թէ Աբգար Թադէոս առաքեալի հետ միասին թարգմանել է Սուրբ Գիրքը ասորերէն, և ոչ թէ հայերէն լեզուով, այն պատճառով, որ հայերէն նշանագրեր չկային։ Այսպիսի դէպքերում կարեւոր է իմանալ, թէ այդ մատենագրերը իրենց կարծիքը արտայայտելիս ինչի՞ վերայ էին հիմնուում։ Ահաւասիկ և Վարդանի խօսքերը[2]։

“Ի սկզբանէ արար աստուած զերկինս եւ զերկիր։ Կամիմ քեզ նիւթ բանի տալ. եւ ոչ կարգաւ մեկնութիւն գրել. ապա եւ զոր ինչ նոր թուի մեզ քեզ ի բացումն սրտի։ Որպէս զայս ամենայն ազգ ունին ի Հ.ից թարքմանութենէն. իսկ Աբգար արքա՝ եւ Թադէոս առաքեալ բերին զգրեանն յեբուսաղեմէ ի (կարդա՝ եւ) հաստատցեալ եբրայեցիք (կարդա՝ եբրայեցիս) որ թարքմանեցին յասորի գիր եւ ի լեզու։ Յայն թարքմանութեան սոյնպէս կա գրեալ։ “Ի սկզբանէ աստուած զէութիւն երկնի եւ զէութիւն երկրի.„ եւ այս յոյժ գեղեցիկ է. զի

---

[1] Այս աշխատանքի սկիզբը դրուած է Մ. Էմինի “Հայկական այբուբենի մասին„ ծանօթութեան մէջ (Ист. Арм. М. Хор. Յաւելուած 4. էջ 361—376) որ տեղ ի միջի այլոց մէջ է բերուում նոյն Վարդանի բոլորովին այլ կարծիքը Հայոց նշանագրերի մասին Մեսրոպին աւելի մօտ ժամանակ։

[2] Մեծի Վարդանայ ճաշակ ինչ ի Սուրբ գրոց, Էջմ. Ձեռագր. Թ. 2282, ԼԴ 2b—3a։

ցուցանէ թէ յոչէից արար. եւ ըստ Հ.իցն բազում երկինս[1] ցուցանէ. եւ այս մի երկին: Եւ էութիւնն երկնի հուրն է եւ օդ՝ եւ էութիւն երկրի հողն է եւ ջուր. որ երեւի Դ տարրն: Կարի յոյժ անոյշ է. Եւ հայերէն գրիչ չկար. վասն որոյ ասորի գրով թարքմանեցին. այս ի մեր նախնոյն մեզ յիշատակ„ եւ այլն:

Ո՞ւր տեղից կարող էր ասորերէն թարգմանութեան մէջ եօ–նի–ն բառը լինել, քանի որ եբրայերէն բնագրին մէջ չկայ այդ: Ես չեմ ուզում ենթադրել, թէ մենք գործ ենք տեսնում եօնի մասնիկի սուտ բացատրութեան հետ, որ նախդիր է հայցական հոլովի, ինչպէս հայերէնում զն, ասորւոյ էլն բառի մտքով, որ նշանակում է՝ էութիւն. բայց ուրիշ բացատրութիւն չեմ գտնում:

## Զ.

Ոսկեփորիկ անելով ընդհանրապէս հասկանում ենք Գրիգոր Տաթեւացու Աստուածաբանութիւնը. այդպէս է կոչուած տպագիր օրինակներում, ինչպէս Կ. Պոլսի 1746թ. հրատարակութեան մէջ. այդպէս են կոչում նորան եւ ձեռագրերը, օրինակ Էջմիածնի թ. 1632, 1633, 1634 եւ այլք: Այս ձեռագրերից առաջինի մէջ բաց ի Գրիգոր Տաթեւացու գործերից՝ կան նոյնպէս Մատթէոս վարդապետի ճառը, Եսայի Նչեցու Հաւատոյ թուղթը, Ստեփաննոս եպիսկոպոս Սիւնեցու Նամակը եւն: Սակայն յիշատակարաններից երեւում է որ Ոսկեփորիկ է կոչուում միայն ձեռագրի[2] այն մասը, որը բո-

[1] Հայկական տպագրուած Աստուածաշունչերում, գոնէ Վենետիկի 1805 թուի հրատ. մէջ դրուած է նոյնպէս մի երկինք՝ ներքին. Հմմտ. Prud'hommeի հատուածը. անդ, տարբեր էջ 172:

[2] Էջմ. N. 1632, 180 p. in $4^0$. Բնագիրը երկու սիւն բաժանուած, իւրաքանչիւրը — 19, 4×6, 4c. — տող՝ 29—30, կազմը՝ տախտակեայ. կաշին՝ դրոշմուած. գրքի եզերքը կարմիր ներկած. Թուղթը՝ հաստ, դեղընկեկ, սակաւ ինչ մոմած. — Թուահամարները (pagination) հայ տառերով

վանդակում է "Հարցմունք Մաստուտ[1] Ճահ իշխանի բարեպաշտի։ Եւ պատասխանիք Գրիգորի եռամեծի՝ աշակերտի տեառն Յոհաննու Որոտնեցոյ տիեզերալոյս վարդապետի։ Նախ յաղագս սրբոյ Երրորդութեան եւ ապա յաղագս Բանին մարդեղութեան ի սուրբ գրոց եւ յուղղափառ վարդապետաց հաւաքեալ։"

Այս աշխատութիւնը, ինչպէս յայտնի է, սկսւում է այս խօսքերով. "Նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի. աւէ ճշմարտութիւն յաւետարանին" եւն. եւ վերջանում է այսպէս. "Եւ մեք զնոյն (դաւանութիւն) պինդ կալցուք յանշարժ յուսով ի կեանս ի մահ եւ յետ մահու. Նորին խոստացեալ բարեացն արժանաւոր լիցուք ի Քրիստոս Յիսուս տէր մեր ամէն[2]"։ Ահա եւ այստեղ (132a) մենք կարդում ենք։

"Գրեցաւ եւ կատարեցաւ գիրս Աստուածաբանութեան. որ անուանեալ կոչի Ոսկի փորիկ. զի ըստ իրին եւ զանունն առեդեալ ունի. Ոսկի, այսինքն անապական եւ պատուական գանձիւք աստուածային առլցեալ. ձեռամբ Անդրէաս դպրի ի վայելումն տէր Յակոբ աւագերէց քահանային։

---

իւրաքանչիւր թերթի վերայ, գրութիւնը՝ խառն. մինչեւ 83a բոլորգիր — մնացեալը նոտրգիր. զարդերը՝ կենդանակերպ գլխատառեր, մանրանկարներ. ցանկը ժa—ժբ a. Գրչի անունը եւ գրութեան ժամանակը՝ տես բերուելիք յիշատակարանը. վիճակը՝ բաւական շօշափուած կաշեայ թեւերը եւ աւզուքը կորսուած. մի քանի թերթեր ելած են կազմից. ձեռագրի վերջում կազմուած է՝ երկուսի ծալած մէջտեղից՝ Մելքիսէթ կաթուղիկոսի թուղթը առ Հայս Լեհաստանի 1076 հայկական թուականով, այն է 1627 Քրիս. թուին 24 փետրուարի շաբաթ։

[1] Տպագրի մէջ Մաշդուս։

[2] Սորանից յետոյ Թ 1632 ձեռագրի մէջ կան քանի մի ճառեր (132—147) մասամբ նոյն իսկ Գրիգորի, մասամբ էլ հանուած Վահրամ վարդապետի երկերից, իբրեւ յաւելուած, ինչպէս որ այս պարզ երեւում է ի մէջի այլոց հետեւեալ՝ "Առաւել քան զչորս հատորն" խօսքերից, որոնցմով նոքա սկսւում են։

Աստուած իրեն բարով վայելել տացէ յերկար ամօք„ եւն։

Նոյն կերպով բացատրում է Ոսկեփորիկ բառը եւ Հետեւեալ յիշատակարանում, որ զետեղուած է չորս մասերի յաւելուածի վերջում (147 b)։

"Եւ ես տարտամս յուսումնասիրաց Գրիգոր պիտականուն խնդրող բանի Հաւաքեցի զգիրս Աստուածաբանութեան. որ անուանեալ կոչի ոսկի փորիկ. զի եւ ըստ իրին զանունն առեդեալ ունի. ոսկի այսինքն անապական գանձիւք աստուածային առլցեալ. որ եւ զատացող իւր եւ զսիրողս աստուածաբանութեանն փարթամացուցանէ[1]։„

Նոյն կերպով բացատրուում է Ոսկեփորիկ անունը նոյն գրքի տպագիր Հրատարակութեան յառաջաբանում, որ գրել է "Աստուծուց ներշնչուած ուսուցիչ„ եւ Պօլսոյ պատրիարք Յակոբ։

"Քանզի արդարեւ սոյն այս գրքուկ՝ ունի յինքեան իբր ի փորի, իւրում զեւիլատական ազնիւ ոսկիս. բուսուցեալ խոնաւութեամբ աստուածայնոյ շնորհաց. եւ եփեալ հրով աստուածային սիրոյն։„

---

[1] Յիշատակարանի մնացեալ մասերը ոչինչ չեն տալիս մեզ Ոսկեփորիկ կոչումը լաւ ըմբռնելու համար, բայց եւ այնպէս նա բովանդակում է այս աշխատասիրութեան յօրինման ժամանակն ու պատճառը (Թաւրէժ քաղաքի իշխան Մասուտի յաճախակի խնդիրը). դորա համար աւելորդ չեմ համարում բերել այստեղ գոնէ ծանօթութեան մէջ յիշատակարանի այդ մասը. "Արդ գրեցաւ սա ընդ հովանեաւ առաքելոյս առաքելական աթոռոյս Եւստաթէի եւ այլ բազմահաւաք սրբութեանց ի նեղ եւ ի նուաղեալ ժամանակի թուականութեան մերոյ ազգի ՊԾ երդ.։ Ի խնդրոյ ումեմն բարեպաշտի խոճայ Մասուտ շահի բնակութեամբ ի սեպուհ արանց Դաւրէժ քաղաքի. զոր խնդրեաց բազում անգամ գրով եւ բանիւ գրել յաղագս սրբոյ երրորդութեան։ Եւ յաղագս քրիստոսի աստուածութեան։ Եւ ես տկար հոգով եւ ծիւրեալ մարմնով հաւաքեցի ի սրբոց արանց զճշտն. եւ զուղիղն եւ գրեցի կարճառօտ բանիւ. եւ ի Դ հատորս բաժանեցի վասն դիւրութեան ընթերցողաց եւ յաւելեալ ի մերոց վարդապետաց իբրեւ թագաւորական կնիք եւ մեկնութիւն ի վերայ եդեալ եւ քրիստոսի աստուծոյ մերոյ փառք„ եւն։

Էջմ. Թ. 1633 ձեռագիրը, Ոսկեփորիկ կոչուած, բովանդակում է ազգային եկեղեցու Ճառագովքի նոյն աստուածաբանական գիրքը։ Միեւնոյնը կարելի է ասել եւ Թ. 1634 ձեռագրի մասին, որ օրինակուած է 1651 թ. Մարիամ միանձնուհու ձեռքով[1] Շէնհէր կուսանոցից, (Տաթեւի մօտ.) ուր այն ժամանակները ճգնում էին բազմաթիւ կոյսեր։

Բայց կայ բաւական ճիշդ որոշուած երկասիրութիւնների ուրիշ շրջան մի, որոնք ձեռագրերում նոյնպէս ընդհանուր անունով Ոսկեփորիկ են կոչւում։ Ոսկեփորիկների այս տեսակը իւր բազմազան բովանդակութեամբ յիշեցնում է սակաւ ինչ նմանանուն Legenda Aurea կոչուած ժողովածուն, եւ բովանդակում է՝ նախ եւ առաջ Վարդան Այկեակցու տասը վաճառականների առակը ընդարձակ մեկնութեամբ, այլեւայլ խմբագրութիւններով, եւ տեսիլներ եւ ընդհանրապէս անվաւեր բնագրեր, օր. Ադամի եւ Եւայի վերայ, յետոյ զանազան հոգեշահ պատմութիւններ, վարք Աղեքսիանոսի առն Աստուծոյ վկայաբանութեան նման, եւ խրատներ, ինչպէս օր. Եփրեմ Խուրին Ասորու ճառը՝ յարութեան վերայ։ Այս տեսակ Ոսկեփորիկների առաւել հանգա-

---

[1] Բերում եմ այստեղ ընդօրինակող միանձնուհու յիշատակարանը. “Ձեռամբ տկար եւ սուտանուն Մարիամ հաւատոր (հաւատաւոր) եւ կուսան կոչեցելոյ անուամբ եւեթ. այլ արդեամբ եւ գործով յոյժ տարակացելոյ։ Ի ժամանակս թագաւորութեան կողմանցս պարսից Շահ Սուլէման կոչեցելոյ եւ ի հայրապետութեան սրբոյ աթոռոյն էջմիածնի տեառն Յակովբայ սրբազան կաթողիկոսի եւ հայոց հանուրց դիտապետի եւ առաջնորդութեան սուրբ եւ գեռահռչակ Ստաթեւի Յովհաննիսի աստուածաբան վարդապետի եւ երջանկափայլ մետրապօլտի տանս սիւնեաց հովապետի ընդ հովանեաւ ամենօրհնեալ սուրբ աստուածածնիս եւ հրեշտակաբնակ սուրբ մենաստանիս Շէնհէր կոչեցելոյ ի մէջ բազմահոյլ եւ խարազնազգեստ կուսանաց . . . Յիշատակ հոգւոյ վերոյ գրեալ տարատամ անձինս եւ ծնողաց իմոց մահդասի Մարգարին եւ Անթառամին եւ հանգուցեալ եղբօրն իմոյ Գասպարին քեռն իմոյ Սողոմին եւ հօրեղբօր իմոյ տեառն Կիրակոսի երկիւղած եւ աստուածասէր քաւչի եւ որդոյ նորին Սուքիասին„ եւն։

մանօրէն նկարագրութիւնը ընթերցողը կը գտնէ ցուցակին մէջ (Թ. 1631, 1636, 1637 եւ 1638). Oskiphorikի մասին տես նոյնպէս էջ 153 Prud'homme, Extr. du livre intitulé „Solutions des passages de l'Écr. Sainte“ յօդուածի (Jour. Asiat. 6. IX. 1867. էջ 147—204)։

Է.

Դեռ եւս 1851 թուին Բռօսէ գրեց (Rapports sur un voyage archéologique etc., III. rap. p. 62) Էջմիածնի Թ. 1722 (ըստ Մ. ց. 1681 թիւ) ձեռագրի վրայ կատարած իւր հնագրական (paléographique) դիտողութիւնների հետեւանքները, որը ի միջի այլոց պարունակում էր Վրաց տարեգրութիւնների հայկական բնագիրը՝ որ նկարագրուած է ստորեւ Ցուցակի մէջ։ Այդ հետեւանքներից նա միեւնոյն եզրակացութեան եկաւ. 1° qu'elle[1] est antérieure au XIII. siècle, 2° qu'elle n'a probablement jamais été poussée plus loin que l'an 1125. 3° que le manuscrit dont je m'occupe est l'original de toutes les copies connues.

Պէտք է աչքի առաջ ունենալ, որ թէեւ յիշատակարանները, որոնց մէջ խնդրւում է յիշել ապսպարողի բարի յիշատակը, անուանում են Տէր Համազասպին, բայց վանահայր է նա արդեօք Ցովհաննավանքին, դեռ եւս յայտնի չէ։ Համազասպի անունով յիշատակարանները պահպանուած են Ղեւոնդի պատմութեան եւ Եւագրի Առակաւոր խօսքերի վերջում։

Բայց մի պարագայ բոլորովին ի նկատի չէ առած Բրոսէ. ձեռագիրը կարող չէր վերջանալ „նստուցն" կէս խօսքով, եւ ճիշդ որ չէր վերջանում. բանը նրանումն է, որ ձեռագրի վերջին թերթը, — որ բովանդակում էր Վրաց տարեգրութեան ոչ

---

[1] Վրաց պատմութիւնը ըստ Հայ աղբիւրի։

շատ ընդարձակ՝ շարունակութիւնը եւ նոյնպէս, հաւանականաբար, գրչի յիշատակարանը — փետուած է, բայց այնպէս, որ հետքերը մնացել են։ Միւս բոլոր արտագրութիւնները արուած են այս ձեռագրից, եւ արուած են՝ ինչպէս երեւում է, այն ժամանակ, երբ որ նորա մէջ արդէն չկար գըլխաւորող թերթը, եւ հասկանալի է, որ բոլոր օրինակութիւնների մէջ Վրաց տարեգրութիւնների հայկական բնագիրը ընդհատւում է "նստուց" կէս խօսքով։ Ահա բոլոր օրինակները, որոնք ծագել են Էջմ. ձեռագրերից։

Ձեռագիր
Էջմ. N. 1722.

1674 Թ. օրինակը.
որը յետոյ դարձաւ Կարապետ եպսի. սեպհականութիւն։

1830 Թ. օրինակը. (Վենետկում. Մխիթարեանց մտ. ԺԹ. Ճառընտիր)
Համառօտ պատմութիւն Վրաց Ջուանշէրի պատմըչի. Վենետիկ. 1884.

Բրոսէի օրինակը.
Chronique Arménienne (Brosset, Addit. et Éclairc. 1851 pp. 1—61.)

Ը.

"Le Ադամ գիրք, dont trois exemplaires figurent en tête du Catalogue des manuscrits d'Etchmiadzin[1] (nº 1, 2 et 3) est peut-être notre Livre d'Adam apocryphe" գրում էր A. Carrière

[1] Տփղիս 1863։

1886ին[1]։ "Սխալուում է հմուտ ուսուցիչն," նկատում էր այդ առթիւ 1889 թուին Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց[2] հեղինակը։ Իսկապէս երկու ուսումնականներն եւս իրաւացի էին, որովհետեւ ցուցակի յիշեալ առաջին երեք թուերի տակ յիրաւի նշանակուած են Առաքել Սիւնեցու[3] Ադամի եւ Եւայի վրայ յօրինած քերթուածի երեք օրինակները եւ ոչ անվաւեր մատեանը. բայց եւ այնպէս Էջմ. մատենադարանում կայ մի անվաւեր գիրք Ադամի վերայ, որն եւ որոնում էր իսկապէս Ա. Կառիէռ։ Որ Հայերը այդպիսի անվաւեր պատմութիւն ունեցել են, այդ յայտնի էր եւ Հ. Զարբհանալեանին (յ. ա. էջ 188)։

Հայոց գրականութեան մէջ, ասում է նա, մենք պատահել ենք մի երկասիրութեան հետեւեալ խորագրով։ "Պատմութիւն վարուցն Ադամայ եւ Եւայի նախաստեղծիցն, որ յայտնեցաւ հրամանաւն Աստուծոյ ի ձեռն Միքայելի հրեշտակապետին՝ մեծ մարգարէին Մովսիսի, որ զաստուածագիծ տախտակն ընկալաւ, զոր նոր թարգմանեաց հոգեւոր տէրն Սիմէոն յԵրուսաղէմ։" Էջմիածնի ձեռագրում յիշուած չէ թարգմանիչը, ինչպէս եւ ոչ այն թէ Միքայէլ հրեշտակապետի ձեռքով յայտնուել է Մովսիսին։

---

[1] Une version arménienne de l'histoire d'Asséneth (Nouveaux Mélanges Orientaux, Paris, 1886, pp. 481.)։

[2] Վենետիկ. էջ 191. "Կը վրիպի հմուտ ուսուցիչն," եւ այլն։

[3] Հրատարակած Կ. Պոլսում 1721ին. ես դարձեալ նկարագրեցի մանրամասնօրէն Էջմիածնի այդ քերթուածի մի ձեռագիրը (թ. 1)։ Տես ցուցակը։ Ինձ յայտնի չէ ինչ յարաբերութիւն ունի "Հայկական մատենագրութեան" մէջ (էջ 7) "Ադամ եւ Եւա Կ. Պոլիս." գրուածքը այն քերթուածի եւ կամ Ադամի մասին անվաւեր պատմութեան հետ։ Մարդկային ազգի նախահօր մասին Հայոց մատենագրութեան մէջ կան շատ բանաստեղծների ստանաւորներ, այդպէս ի միջի այլոց Վարդան Պիւլպիւլինը (Էջմ. ձեռգր. թ. 283) "Մեր տէրն ի դրախտին երէկ, Ադամայ ստեղծողն եկեալ," եւն։

Էջմ. մատենադարանի Ադամի եւ Եւայի վարուց պատմութեան օրինակը ներկայացուցիչ է այն յունական խմբագրութեան, որի մասին Դիլլման յիշում է իբրեւ միջինադարեան երկասիրութիւն, եւ որը Տիշենտորֆ՝ հրատարակիչը ըստ ձեռագրաց ԺԲ եւ ԺԳ դարուց, վերագրում է Քրիստոսի ծննդեան մօտ դարերին[1]: Ընդհանրապէս ասած՝ հայ եւ յոյն բնագիրների նոյնութիւնը պարզ երեւում է, թէ համեմատենք հայ բնագիրը Διήγησις καὶ πολιτεία Ἀδὰμ καὶ Εὔας τῶν πρωτοπλάστων κτλ[2] ի հետ. մանրամասնութիւնների մէջ կարելի է մանել, երբ յայտնուին մի քանի հայ օրինակներ, որ կարող չէ չպատահել, երբ հէնց որ մէկը մխուի նոյն իսկ Էջմ. մատենադարանի խորքերը: Քանի մի զանազան ընթերցուածներ, որով զանազանուում է Հայոց բնագիրը յոյն բնագրից, գտնուում են յունական հրատարակութեան վարիանտներում. այդպէս օր. յունական բնագրում ըստ Տիշենտորֆի (յ. տ. էջ 3) չէ յիշուում Ադամի տարիքը, բայց այդ տեղին վերաբերեալ վարիանտներից յայտնի է, որ տարիքը յիշուած է յունական ձեռագրերից (B) մէկում[3], ինչպէս եւ մեր հայկական քերթուածում: Միւս կողմից հայկական քերթուածը չունի՝ օրինակ՝ Սեթի հարցմունքը (էջ 3) τί ἐστι πόνος καὶ νόσος, բայց շատ կարելի է, որ նա պատահաբար բաց է թողուած միայն մեր օրինակում:

Ներկայացնում եմ մասամբ թարգմանաբար, մասամբ էլ կրճատ բովանդակութիւնը Ադամի եւ

---

[1] W. Meyer, Vita Adae et Evae. Abh. d. Phil.-Philol. Classe d. k. Bayer, Acad. d. Wiss. XIV. B., III Abth. pp. 192—193.

[2] C. Tischendorf, Apocalypses Apocryphae. Lipsiae 1866, pp. 1—23. Նոյնպէս Ceriani, Monumenta Sacra et Profana, Mediolani 1868, pp. 19—24.

[3] Տես նոյնպէս Ceriani l. c., p. 21. Ἔζησεν δὲ Ἀδὰμ ἔτη ἐνακόσια λ'.

Եւայի պատմութեան ըստ Էջմ. հայ ձեռագրին Թիւ 1631 (198a—212a) գրուած 1539 թուին[1]։

"Պատմութիւն վարուցն Ադամայ եւ Եւայի նախաստեղծացն զկնի ելանելոյ նորա (նոցա) ի դրախտէն փափկութեան։

Առեալ Ադամ զկինն իւր զԵւայ եւ գնաց ի տեղի մի որ էր ի կողմանս յարեւլից, դէմ յանդիման դրախտին փափկութեան։ Եւ բնակեալ եղեւ անդ զամս ութուտասն եւ ամիսս երկուս՝ եւ յետ այսորիկ մերձեցաւ Ադամ յԵւայ ի կինն իւր՝ եւ յղացաւ եւ ծնաւ երկուս որդիս՝ զԱնլոյան որ կոչի Կայեն. եւ զԹարեխորհ որ կոչի Հաբէլ[2]։ Իսկ յետ այսորիկ մինչ դեռ ննջէին Ադամ եւ կինն իւր՝ եւ տես Եւայ տեսիլ։ Յայնժամ զարթուց(ոյց) Եւայ զԱդամ եւ զտեսիլն պատմէր Ադամա. եւ ասէր այսպէս. Տէր իմ, տեսանէի ի տեսլեան գիշերիս զի արիւն որդւոյն մերում Հաբէլի լցեալ լինէր ի բերան Կայենի եղբաւր իւրում. եւ նա ըմպէր զարիւն եղբաւր իւրում։ Իսկ Հաբէլ աղաչէր զնա թողուլ նմա սակաւիկ մի յարենէ անտի։ Եւ նա ոչ լինէր նմա ունկն դիր՝ այլ վաղվաղակի ըմպէր զամենայն, եւ ոչ մնայր արիւն այլ ի փորի նորա. այլ արտաքս փսխէր զամենայն։ Իբրեւ լուաւ զայս Ադամ ասէ ցնա. յարուցեալ երթիցուք տեսանել զորդեակն մեր. եթէ զի՞նչ պատահել(հեալ) իցէ նոցա։„

Երեւեցաւ, որ Աբէլ սպանուած է իւր եղբօր Կայենի ձեռքով. Ադամ ստացաւ հրաման Աստուծուց Միքայէլ հրեշտակապետի միջոցաւ լռել իւր ամէն տեսած բաների մասին եւ Եւային նախագուշակուեցաւ սփոփանքի համար, որ նա կը ծնի մի ուրիշ որդի։

[1] Տես Ցուցակը։ Ես պահպանում եմ, ինչպես առհասարակ, ձռգրի. ուղղագրութիւնը ի բաց առնելով դ եւ դ տառերը ոնդէի եւ ուդդէի մէջ։

[2] Յունարէնում (p. 1). *τὸν Διάφωτον* (Ceriani: *Ἀδιάφωτον) τὸν καλούμενον Κάϊν καὶ τὸν Ἀμιλαβὲς τὸν καλούμενον Ἄβελ.*

“Իսկ յետ այսորիկ դարձեալ մերձեցաւ Ադամ յԵւայ ի կինն իւր եւ յղացաւ եւ ծնաւ՝ զՍէթ. եւ ասէ Ադամ ցԵւայ. Ահա ծնաք որդի փոխանակ Հաբէլի զոր եսպան Կայէն. արդ յարուցեալ տացուք փառս եւ աւրհնութիւն աստուծոյ: Եւ եղեն Ադամայ որդիք. Լ. եւ ժամանակս կենաց նորա զոր եկաց ի վերայ երկրի. Ջ. եւ Լ. ամք:„

Սորանից յետոյ Ադամ հիւանդացաւ եւ բարձրաձայն կանչեց իւր մօտ որդիներին:

“Յայնժամ ասէ Սէթ որդին իւր ցԱդամ. Ով հայր իմ, զի՞նչ է հիւանդութիւն (եւ) խա(ւ)թութիւն քո: Եւ նորա պատասխանի տուեալ ասէ ցնա. Ցաւք բազումք եւ անհնարինք պաշարեն զիս, ով որդեակ իմ: Ասէ ցնա Սէթ. Ո՛վ հայր իմ, մի թէ զմտաւ ածե(ա)լ իցես զփափկութիւն եւ զվայելչութիւն դրախտին աստուծոյ եւ զպէսպէս զանազանութիւն պտղոցն յորմէ համապազ ճաշակէիր. եւ վասն այնր տրտմութեան է հիւանդութիւն քո. եւ թէ այդ այդպէս իցէ, ով հայր իմ, ասա ինձ, եւ ես երթայց բերից քեզ ի պտղոյ դրախտին կենաց՝ զի երթայց արկից հող ի գլուխ իմ եւ լացից առաջի նորա եւ աղաչեցից զտէր աստուած. եւ տէր լսէ ձայնի աղաչանաց ծառայի իւրոյ եւ առաքէ զհրեշտակս իւր եւ կատարեսցէ զխնդրուած իմ. եւ բերից քեզ ի պտղոյ դրախտին կենաց կերակուր քեզ զի ճաշակե(ա)լ ողջանա(յ)ցես ի հիւանդութենէ քումմէ:

Ասէ ցնա Ադամ. Ոչ այդպէս իցէ, որդեակ իմ Սէթ. այլ հիւանդութիւնք բազումք եւ ցաւք անհնարինք նեղեն զիս: Ասէ ցնա Սէթ. եւ ո՞րպէս եղեն ցաւք հիւանդութեան քում, պատմեա ինձ, հայր իմ:„

Ադամ պատմում է իւր յանցանքի եւ Աստուծոյ անէծքի մասին, որը հասաւ նորան Ադամին:

“Իսկ Եւայ լացեալ յոյժ եւ ասէ ցԱդամ.

Տէր իմ, յարուցեալ եւ զկէս ցաւոց անձին քո տացես ինձ եւ բարձից զնոսա. վասն զի յաղագս իմ եղեւ քեզ այդս՝ եւ վասն իմ իցես յաշխատութեանդ: Եւ ասէ ցնա Ադամ. Յարուցեալ դու եւ որդիք քո Սէթ եւ երթիջիք մերձ առ դրախտին եւ արկջիք հող ի վերայ գլխոց ձերոց եւ ողբասջիք յոյժ լալով եւ աղաչեցէք զաստուած զի թերեւս գթասցի ի վերայ իմ. եւ առաքեսցէ զհրեշտակս իւր ի դրախտն փափկութեան եւ տացէ ինձ ի պտղոյն յորմէ ելանէ աւծումն ողորմութեան՝ եւ աւծանիցէք նովաւ զանձն իմ. զի թերեւս ապաքինացայց ի ցաւոց աստի:„

Եւա եւ Սէթ գնում են դրախտի ուղղութեամբ: Ճանապարհին Սէթի հետ կռւում է մի չար գազան: Դրախտի մօտ Միքայէլ հրեշտակապետը Աստուծոյ անունով մերժում է նոցա տալ ներողութեան ծառի պտղից եւ գուշակում է Ադամի մօտալուտ մահը: Եւա ու Սէթ վերադառնում են տուն: Որդիները լացով ու կոծով շրջապատում են Ադամի մահուան անկողինը: Նոցա հետ միասին ողբում է եւ Եւա:

Եւա պատմում է, թէ ի՛նչպէս նա մեղանչեց, լսելով սատանային, ի՛նչպէս նա մեղքի մէջ մտցրեց Ադամին. եւ ի՛նչպէս իրենք անիծուեցան, Ադամ եւ Եւա, եւ օձը:

“Եւ յետ այսորիկ հրաման ետ տէր հրեշտակաց իւրոց սրբոց հանեալ (կարդա՝ հանել) զմեզ ի դրախտէն փափկութեան: Եւ իբրեւ հանեալ տանէին զմեզ՝ ողբայայք յոյժ եւ լացաք դառնապէս: Եւ ասէ հայրդ ձեր Ադամ. Թոյլ տուք ինձ սակաւիկ մի զի աղաչեցից զմարդասէրն աստուած. զի թերեւս գթասցի ի վերայ իմ զի ես միայն մեղայ: Եւ թոյլ ետուն նմա հրեշտակքն առ ի հանելոյ զմեզ: Եւ գոչեաց Ադամ ի ձայն մեծ եւ ասէ ողբալով. Թող ինձ, տէր, զանցանս իմ զոր ինչ գործեցի: Յայնժամ ասէ տէր ցհրեշտակս իւր. ընդէ՞ր

թողացուցէք չարտաքսել զդոսա ի դրախտէդ. մինթէ ես ինձէն արարի կամ անիրաւ դատեցի զդոսա...

... Եւ դարձեալ տէր յԱդամ եւ ասէ ցնա. Ոչ թողից զքեզ յայամհետէ լինել քեզ ի դրախտի աստ։ Եւ պատասխանի տուեալ Ադամ եւ ասէ ցտէր. Տէր իմ եւ աստուած իմ, աղաչեմ զքեզ պարգեւեայ ինձ ի տնկոյն կենաց զի ուտիցեմ ի նմանէ յառաջագոյն քան զելանելն իմ ի դրախտէն կենաց։ Դարձեալ խաւսեցաւ աստուած ընդ Ադամ եւ ասէ. եւ այժմ ոչ առնուցուս ի դմանէ. քանի հրամայեցաք քերովբէիցն բոցեղէն սրովն պահեալ(հել) զճանապարհն վասն այդորիկ զի մի ճաշակեսցես ի նմանէ եւ անմահ մնասցես յաւիտեան՝ այլ եղիցի ընդ քեզ թշնամին։ Եւ յորժամ հրաժարեսցես դու ի դրախտէն եւ պահեսցես զանձն քո յամենայն չարութենէ եւ զմտաւ ածիցես զմահ. զկնի վախճանելոյ(լոց եմ զ)քեզ. եւ յայնժամ տաց քեզ ի պտղոյն կենաց եւ մնասցես անմահ յաւիտեան։ Եւ զայս ասացեալ տէրն. հրաման ետ հրեշտակաց արտաքս հանել զմեզ ի դրախտէ անտի. եւ ապա հայրդ ձեր Ադամ ելաց դառնապէս ի դրախտին առաջի հրեշտակացն։ Եւ ասեն ցնա հրեշտակքն. զի՞նչ կամիս զի արասցուք քեզ՝ ով Ադամ։ Պատասխանի ետ եւ ասէ ցհրեշտակսն. Գիտեմ զի այժմ հանէք զիս՝ այլ թողացուցէք ինձ զի առից անուշահոտ ինչ ի դրախտէ աստի. զի յորժամ լինիցիմ արտաքոյ ի սմանէ եւ մատուցանեմ պատարագ աստուծոյ՝ եւ տէր լուիցէ խնդրուածոց իմոց։ Իսկ հրեշտակաց մատուցեալ առ տէր եւ ասեն ո՞յիլի ո՞յիլ[1]. որ թարգմանի թագաւոր յաւիտենական. եւ՝ հրամայեաց տալ Ադամայ խունկս անուշահոտութեան ի դրախտէ անտի։ Եւ հրամայեաց տէր աստուած

---

[1] Յուն. բնագրում (էջ 16). Ἰαὴλ αἰώνιε βασιλεῦ.

ածեալ(եւ) զԱդամ առաջի իւր. զի առնուցու զխունկս անուշահոտութեան եւ զսերմանիս կերակրոց իւրեանց. Թոյլ տուեալ հրեշտակացն: Եւ եկեալ Ադամ առաջի տեառն: Եւ տէր աստուած հրամայեաց տալ նմա չորս իրք որ են այսոքիկ՝ կրաւկաւն[1] որ է զաֆարան. եւ նարդոս[2] որ է փայլասենի. եւ կալամոն[3] որ է եղէգն. եւ կինամոն[4] որ է դարասենի. եւ այլ բազում սերմանիս ի կերակուրս մեր: Եւ իբրեւ առ զայն ամենայն ելաք ի դրախտէ անտի. եւ տեսանէաք եդեալ զմեզ յերկիրս յայսմիկ:„

Վերջացնելով վշտալի պատմութիւնը, Եւա պատուիրում է զաւակներին յիշել նենգաւոր ոսոխին (սատանային): Ադամ աղաչում է ամուսնուն, որ իւր մահից յետոյ որդիներից ոչ մէկին չթողնէ իւր մօտ մինչեւ հրեշտակի երեւալը, իսկ մինչեւ ՝մահը խնդրում է, նա աղօթք անէ: Եւա աղօթում է եւ այն ժամանակ հրեշտակները տանում են փայլով Ադամի հոգին Աստուծոյ մօտ: Եւա կոչում է Սէթին հրճուելու այն փառքի տեսարանով, որը շրջապատում է Ադամին, հրեշտակները աղաչում են Աստուծուց, որ ներէ Ադամի մեղքերը:

“Եւ արդ ո՞վ իցեն երկու արքն այնոքիկ եթէոպացիքն. որ կան առաջի աստուծոյ աղաչելով զաստուած ՚յաղագս հաւրն քո Ադամայ: Ասէ ցնա Սէթ. Ո՞վ մայր իմ, արքն այնոքիկ զոր տեսանես՝ արեգակն եւ լուսին են. որ կան եւ աղաչեն զաստուած անկեալք ի վերայ երեսաց իւրեանց յաղագս հաւրն իմոյ Ադամայ: Եւ ասէ ցնա Եւայ եւ ո՞ւր իցէ լոյս նոցա. զի՞արդ մթնացեալ երեւին: Պատասխանի ետ Սէթ եւ ասէ. Ոչ եթէ ի բաց եղեալ է լոյսն ի նոցանէ. այլ ոչ երեւի լոյս նոցա

[1] Յուն. (էջ 16) κρόκον.

[2] Յուն. (անդ) νάρδον.

[3] Յուն. (անդ) κάλαμον.

[4] Յուն. (անդ) κινάμωμον.

առաջի հաւրն լուսոյ վասն զի ծածկի պայծառութիւն նոցա ի փառաց եւ ի մեծ պայծառութենէ երեսաց հաւրն լուսոյ։„

Վերջապէս Աստուած ներեց Ադամին եւ մէկը վեցթեւեան սերովբէներից տարաւ նորան անտեղծ ծովը, ընկղմեց նորա մէջ երեք անգամ եւ յետ բերեց։

“Իսկ յետ այսորիկ արձակեալ զձեռն իւր որ հայրն է ամենեցուն. որ կայր նստեալ ի վերայ աթոռոյ իւրոյ. եւ առեալ զԱդամ ետ զնա ի ձեռն Միքայելի հրեշտակապետին ասելով ցնա. տար զնա յերկրորդ երկինս եւ հանգոյ մինչեւ յաւր մեծ ի նորոգմանն. զի կամիմ առնուլ զփրկութիւն ի մէջ երկրի յաղագս Ադամայ եւ ամենայն ծննդոց իւրոց։„

Միքայէլ հրեշտակապետը կատարում է Աստուծոյ կամքը։ Հրեշտակները խնդում են եւ զմայլում են նորա մարդասիրութեան վերայ[1]։

“Իսկ յետ այնչափ խնդրութեանս (կարդա՝ խնդութեանս) զոր լինէր վասն Ադամայ՝ խաւսեցաւ Միքայէլ հրեշտակապետն ցհայրն լուսոյ վասն Ադամայ եւ ասէ ցնա Տէր[ն][2]. ժողովեսցին հրեշտակք ամենայն առաջի աստուծոյ իւրաքանչիւր ոք ըստ կարգի իւրում, եւ ժողովեցան ամենեքեան ոմանք զբուրվառն ի ձեռն ունելով եւ ոմանք քնարս եւ փողս։ Եւ ահա տէրն համբարձաւ փառաւք ի վերայ չորից հողմոց եւ սերովբէք բուռն հարեալ ունէին զհողմոցն. եւ հրեշտակք յերկնից իջանէին եւ գային առաջի նորա ամենեքեան եւ իջանէին յերկիր. ի տեղւոջ յայնմիկ յորում կայր անկեալ մարմինն Ադամայ։ Եւ անտի երթեալ

---

[1] Հրեշտակների ուրախութեան մասին յունական բնագրում ոչ մի խօսք չկայ. պակասութիւն է զգացուում եւ հայ բնագրում, որ հետեւում է անմիջապէս։

[2] Եթէ հետեւինք ձեռագրի կիտադրութեանը, դուրս կը գայ, որ հրեշտակապետը ասաց նորան “Տէր, ժողովեսցին„ եւ այլն։

*տէր մատնէր ի դրախտն երկնաւոր զաւրաւքն։ Յայնժամ տունկք եւ ծառք՝ պտղաբերեալ ծաղկէին առ հասարակ եւ բուրէր անուշահոտութիւն մինչեւ ամենեցուն որ ծնեալ էին յԱդամայ՝ թըմրեալք լինէին եւ ի քուն ննջէին ի բուրմանէ անուշահոտութեան ծաղկանց դրախտին՝ բայց միայն ի Սեթայ որ ոչ թմրեցաւ. քանզի տէր կամեցաւ ցուցանել նմա զաքանչելիսն զոր գործելոց էր։ Իսկ տէր աստուած նայեցեալ տեսանէր զմարմինն Ադամայ այնպէս անկեալ յերկիր. տրտմեալ լինէր յոյժ մարդասիրութեամբն իւրով. եւ ասէ. Ո՛վ Ադամ, ընդէ՞ր գործեցեր զայդ՝ զի եթէ պահեալ էիր զպատուիրանն իմ զոր ետու քեզ՝ ոչ ուրախ լինէին այնոքիկ որք ածին զքեզ ի տեղիդ այդմիկ։„*

*Բայց Աստուած խոստանում է Ադամին, իսկ դորա հետ եւս ամբողջ մարդկութեան, մեղքերի ներումն. իսկ մինչեւ այն ժամանակ Ադամի մարմինը պիտի հանգչի Դրախտում, այն իսկ հողում, որ տեղից նա առնուած է։ Ինքը Աստուած եօթը հրեշտակների օգնութեամբ թաղում է Ադամի մարմինը Աբելի մարմնի հետ միասին։*

*“Իսկ Եւայ ոչ իմացեալ եթէ ուր եդաւ մարմին նորա (Ադամայ)՝ լի լինէր տրտմութեամբ մեծաւ եւ լայր դառնապէս յաղագս մահուան նորա եւ դարձեալ յաղագս ոչ գիտելոյ զմարմին նորա եթէ զինչ եղեւ. քանզի որպէս ասացաք յառաջագոյն թէ ամենեքեան թմրեալք էին հանդերձ Եւայիւ ի ժամն այնմիկ յորում էջ տէրն ի դրախտն վայելչութեան՝ յաղագս մարմնոյն Ադամայ։ Եւ արդ եղեն հրաշքս այս ամենայն, եւ ոչ ոք գիտաց ի նոցանէ՝ բայց միայն Սէթ որդի նոցա։ Իսկ յետ այսորիկ՝ իբրեւ եհաս ժամն վախճանի Եւայի. յարուցեալ իսկ ինքնին եկաց յաղաւթս արտասուաւք եւ ասէ. Տէր աստուած ամենայն բնութեանց արարածոց՝ մի որուշեր (որոշեր) զիս ի մարմնոյ ծառային քո Ադամայ. քանզի դու իսկ*

առեր զիս ի մարմնոյ Ադամայ եւ յոսկերաց նորա եւ ստեղծեր զիս եւ աղաչեմ զքեզ արայ արժանի զիս զանարժանս եւ զմեղուցեալ մարմին աղախնոյ քո՝ ոչ որուշեալ (որոշեալ) ի մարմնոյն Ադամայ որպէս յառաջագոյն էի ընդ նմա ի դրախտի անդ։ Քանզի եւ յանցեալն (ցանել) մեր զպատուիրանաւքս (նաւ քով) ոչ բաժանեցաք ի միմեանց։ Եւ իբրեւ կատարեաց զաղաւթս զայս՝ հայեցաւ յերկինս եւ բախեաց զկուրծսն իւր եւ ասէ. Ո՛վ տէրդ եւ աստուածդ ամենեցուն, ընկալ զհոգի իմ խաղաղութեամբ. եւ զայս ասացեալ ննջեաց աւանդելով զհոգին իւր ի ձեռն հրեշտակաց։ Իսկ յետ այսորիկ Միքայէլ հրեշտակապետն հանդերձ երեք հրեշտակապետաւքն. բարձեալ զմարմին Եւայի եւ տարեալ թաղեցին ի տեղւոջն յորում կայր մարմինն Ադամայ եւ Աբելի արդարոյ։ Եւ յետ այսորիկ ձայն ետ Միքայէլ հրեշտակապետն առ Սէթ եւ ասէ այսպէս. Թաղեսցես այսպէս զամենայն մարդվախճանե(ա)լ մինչեւ յօր միւսանգամ գալստեան եւ յարութեան։ Եւ այսպէս եդեալ զաւրէնս՝ ասէ ցնա. եւթներորդումն աւուրն հանգիցես եւ ուրախ լինիցիս ի նմա. զի յայսմ աւուր աստուած եւ ամենայն հրեշտակք նորա ուրախ լինիցիմք հանդերձ ամենայն հոգիաւք արդարոցն որք իցեն ի վերայ երկրի։ Եւ զայս իբրեւ ասաց Միքայէլ հրեշտակապետն ցՍէթ եւ առ ժամայն համբարձաւ յերկինս հանդերձ երեք հրեշտակապետաւքն գոհաբանելով եւ փառաւորելով զաստուած եւ երգէին զերգս ասելով՝ ալէլուայ ալէլուայ՝ սուրբ սուրբ սուրբ. տէր զաւրութեանց։ Փառք աստուծոյ ամենակալին յաւիտեանս յաւիտենից։„

## Թ.

Համեմատելով հայ մատենագրութեան մէջ գտնուած անվաւերական գրքերի ցուցակը ըստ երկու նշանաւոր մատենագրաց, Ա. Կառիէռ նկատել

է, որ Երկոտասան Նահապետաց գրքից յետոյ Մխիթար Այրիվանեցին (ԺԳ դար) դնում է "Աղօթք Յովսեփայ", իսկ Յովհաննէս Սարկաւագը (ԺԱ դար) "Ասենիթի աղօթքն": Comment le même livre peut-il être désigné sous le titre de Prière de Josef, et en même temps sous celui de Prière d'Asséneth[1]? հարցնում է փրանկ արեւելագէտը:

Իմ Թ. 1755 (Տես ցուց.) նկարագրած Էջմիածնի ձեռագիրը տալիս է իմ վերջնական կարծիքիս համեմատ փոքր ի շատէ հիմունք տարբեր համարելու Ասանէթի աղօթքը Յովսէփի աղօթքից եւ միանգամայն չշփոթուիլ Մխիթար Այրիվանեցու եւ Յովհաննէս Սարկաւագի առերեւոյթ հակասութեամբը, որ եւ դարձրել է իւր վերայ ուսուցչապետ Կառիէռի ուշադրութիւնը:

Ասանէթի աղօթքը Յովսէփի եւ Ասանէթի պատմութեան մի մասն է: Այս պատմութիւնը ըստ Էջմ. յիշեալ ձեռագրին, եւ ինչպէս առ հասարակ յայտնի է, կազմուած է երկու ժամանակակէտերից: Ասանէթի Յովսէփի հետ ամուսնանալու պատմութիւնից եւ եգիպտական թագաժառանգի միջադէպից, որ հետամուտ էր Ասանէթին՝ որն արդէն Յովսէփի կինն էր դարձել. այս իսկ միջադէպն է Կառիէռի հրատարակածը՝ հայերէն եւ փրանկ թարգմանութեամբ[2]. բայց հրատարակիչը սկզբից թողել

[1] Nouv. Mél. Or. p. 483.

[2] Մէջ եմ բերում Էջմ. ձեռագրի եւ տպագրի տարբերութիւնները: — Տպագրուած [illegible] հօր իւրոյ եւայլն (էջ 491 տող 3) ձեռագրում — [illegible] նորա [illegible] հօր իւրոյ եւայլն: Տպ. [illegible] (տող 7) ձեռագրում — [illegible]: Տպ. [illegible] (տող 19) ձեռագրում — [illegible]: Տպ. [illegible] ԼՌ [illegible] (տող 3 ցածում) ձեռագրում — [illegible] (կարդա [illegible]) [illegible] ԼՌ [illegible]: Տպ. [illegible] (էջ 492. տող 14 ցածում) ձեռագրում — [illegible] (այս ինքն՝ [illegible]): Տպ. [[illegible]] (էջ 495. տող 9. ցածում) ձեռագրում — [illegible]: Տպ. [illegible] (էջ 496 տող 6) ձեռա-

է մի երես, որի վերնագիրն է ձեռագրի մէջ “Աւրհ-նութիւն (եւ) խոստովանութիւն Ասանեթայ[1]:„ Ահա հայ բնագիրը:

“Մեղայ տէր՝ մեղայ առաջի քո եւ բազում ա-նօրէնութեամբ յանցեայ ես Ասանէթ դուստր Պե-տափրէի քրմին Արեգ քաղաքին. որ վերայկացուն էր աստուածոցն ամենայնի. մեղայ տէր՝ մեղայ ա-ռաջի քո. բազում յանցեայ. եւ պաշտեցի զչաս-տուածս որ ոչ գոյ թիւ. եւ ուտէի ի հացէ զոհից նոցա, մեղայ տէր՝ մեղայ առաջի քո եւ բազում յանցեայ. եւ ոչ գիտէի եւ զբաժակ որոգայթից արբի եւ ուտէի [ի] սեղանոյն մահու. մեղայ տէր՝ մեղայ առաջի քո. բազում անցեայ եւ ոչ գիտէի տէր աստուած երկնից. եւ ոչ յուսացայ ի բարձր-եալն աստուած կենդանին յաւիտենից. մեղայ տէր՝ մեղայ առաջի քո եւ բազում յանցեայ եւ յու-սացայ ի մեծութիւն փառաց իմոց եւ ի գեղեց-կութիւն իմ եւ էի հպարտ եւ ամբարտաւան. մե-ղայ տէր՝ մեղայ առաջի քո. բազում յանցեայ եւ արհամարհելով զամենայն մարդով. եւ ոչ էր այր որ երեւէր առաջի իմ. մեղայ տէր՝ մեղայ առաջի քո.

---

գրում — ცათაცა: Տպ. ღორღებიან ხა ორთანთ (տող 16) ձեռագրում — ღორღებიან ორთანთ (forme plurielle de սուր, à moins que ce ne soit une erreur de copiste, նկատում է. Պրոֆ. Կառիէռ. բայց աւելի լաւ չէ՞ արդեօք այսպիսի դէպքում ორთანთ բառը համարել կանոնաւոր ձեւ. որն ինչպէս կայ, սրունքի մտքով:) Տպ. ი ჰოშნ ხეჭეტან (էջ 497, տող 1) ձեռագրում — ი ფურცლი ხეჭეტან: Տպ. ი ფორთოხლი (տող 5) ձեռագրում — ი ფორცლი (այսինքն՝ ფოთოლი կամ ფურცლი): Տպ. ხნდრებეთ (տող 11 եւ 15) ձե-ռագրում — ხნოჲსებეთ. (ուղղել է արդէն հրատարակիչը 2 նկատ. մէջ. Il faut lire probablement . . . խնայեցէք): Տպ. ჭანხარ (էջ 498, տող 1) ձեռագրում — ჭანოჲს (նոյնպէս ուղղել է հրատարակիչը 1 նկատ. մէջ):

[1] Այդ վերնագիրը կայ եւ ասորական աղբիւրի մէջ. “Թէշբոխթա դը-թաւդիթա դ'Ասանաթ լվաթ ալահա մրայ-մա.„ Land. Anecd. syriac., t. III. p. 38. Oppenheim, Fabula Josephi et Asenethae apocrypha e libro syriaco latine versaի մէջ Berolini 1886, p. 40, թարգմանում է Hymnus ac celebratio Asenethae in Deum excelsum, բայց “թաւդիթա“ նշանակում է խոստովանութիւն:

բազում յանցեայ եւ ասէի ոչ գոյ իշխան յերկրի որ լուծանէ զգօտի կուսութեան իմոյ. մեղայ տէր մեղայ առաջի քո բազում յանցեայ. այլ եղէց հարսն որդոյ մեծ թագաւորին մինչգա եկն յօփ. զաւրաւորն աստուծոյ եւ իջոյց զիս ի զօրութենէ իմմէ եւ խոնարհեցոյց զիս յամբարտաւանութենէ իմմէ. եւ գեղեցկութեամբ իւրով սրսաց զիս եւ իմաստութեամբ իւրով որպէս ձուկն կարթիւ եւ դեղովն որպէս զդեղ կենաց եւ զօրութեամբ իւրոյ հաստատեաց զիս եւ ած մատոյց զիս աստուծոյն յաւիտենից:» ,

Կասկած չկայ, որ առաջիկայ հատուածում մենք գործ ունինք աղօթքի հետ. Նորա բովանդակութիւնը ճշդիւ լիով արտայայտուած է «Աւրհնութիւն եւ խոստովանութիւն» վերնագրի մէջ: Ասանէթ սրտաբեկուում է իւր անցեալ մեղքերի համար. Նորա խօսքերի մէջ լսուում է գովաբանութիւն դէպ ի բարեգութն Աստուած, որ այնքան երկար հանդուրժել է նորան, մեղաւորին, բոլոր անօրէնութիւններին, կռապաշտութեանը, հպարտութեանը, աւելորդ ինքնավստահութեանը, եւայլն: Մի խօսքով սա մի ապաշաւող հոգու աղօթք է եւ կարծեմ նման է Յովհաննէս Սարկաւագի «Աղօթք Ասենիթի» կոչածին. այս դէպքում պէտք է ենթադրել, որ «աղօթք» ասելով Յովհաննէս Սարկաւագը հասկանում էր Յովսէփի եւ Ասանէթի բոլոր պատմութիւնը. որովհետեւ այլապէս միայն աղօթքը իւր չափազանց կարճութեամբ, ինչպէս որ մէջ բերինք, դժուար թէ դարձնէր իւր վերայ հայ եկեղեցու նախանձախնդիրների ուշքը եւ ընկնէր Index apocryphorum-ի մէջ: Ճշմարիտ է, բաց ի վերնագրից ԺԱ դարի հայ մատենագրի Ասանեթի Աղօթքի մասին ուրիշ ոչ ինչ չգիտենք. բայց բանը նրանումն է, որ բաց ի այդ Աղօթքից Յովհաննէս Սարկաւագը ուրիշ անվաւերականի անունն չէ տալիս, որ կապուած լինի Յովսէփի կամ

Ասանէթի անուան հետ, որոնց մերժուած պատմութիւնը, ըստ երեւոյթին, գոյութիւն ունէր նորա ժամանակ։ Յետոյ, Ասանէթի Աղօթքը առանձնացած չէ հայ մատենագրութեան մէջ. այսպէս կամ այնպէս, նա պէտք է կապ ունենայ Մխիթար Այրիվանեցու ցուցակի Յովսէփայ Աղօթքի հետ, իսկ այս Յովսեփայ Աղօթքը, կարծեմ, նոյնպէս ունինք։ Էջմիածնի միեւնոյն Թ. 1755 ձեռագրում Ասանէթի անվաւերականից առաջ կայ Կպոլ Յովսէփայ, որ սկսւում է այս փառաբանութեամբ, ինչպէս Սաղմոսի շատ տեղերում։

"Եւ տեսի ի կեանս իմում զնախանձ եւ զմահ եւ ոչ մոլորեցայ ի ճշմարտութենէ տեառն։ Եւ եղբարք իմ այլազգիկ ատեցին զիս. նոքա կամէին սպանանել զիս եւ աստուած հարցն իմոց պահեաց. ի ջրհորն ընկեցին զիս. բարձրեալն եհան զիս. ի ծառայութիւն վաճառեցայ ես. եւ տէրն ամենայնի ազատեաց զիս. ի գերութիւն վարեցայ ես եւ տէր ինքն դարմանեաց զիս. միայն էի եւ աստուած մխիթարեաց զիս. ի հիւանդութեան էի. եւ խնամակալն այցելու եղեւ ինձ. ի բանդի եդայ ես. եւ աստուած շնորհալից արար զիս. ի կապանս էի եւ տէր արձակեաց զիս. ի չարայխաւսութիւնս (մատնեցայ) եւ ջատագովեաց վասն իմ. ի բանդս դառինս (եգիպտացւոց) եւ անդի փրկեաց զիս" [1] եւն։

Այս արդար Յովսէփի աղօթքն է, որը երբեք չէ շեղուել ճշմարտութեան շաւղից եւ նորա հակադրութիւնը ապաշաւող Ասանէթի աղօթքի հետ դժուար թէ պատահական լինի. նոքա, ըստ երեւութին, կարգաւորուած էին, այնպէս որ ընթերցողը անպատճառ մի աղօթքից յետոյ կարդում էր միւսը եւ համեմատութիւնից դուրս էր բերում յայտնի համոզմունք, "պիտանի վասն հոգւոյ եւ

---

[1] Այսպիսի աղօթքներ գտնւում են անվաւերականի եւ միւս մասերում։

վասն մարմնոյ», ինչպէս ասւում է հայկական ձեռագրերում քարոյագիտական ասացուածների եւ պատմութիւնների մասին։

Որ իմ ցոյց տուած Յովսէփայ կտակի մէջ մենք իրաւունք ունինք փնտռել այն, ինչ որ Մխիթար Այրիվանեցի կոչում է Աղօթք Յովսէփայ, ապացոյց է տալիս մի տեսակ եւ նորա գտնուած տեղը։ Յովսեփայ կտակը, նա է, իմ կարծիքով, Յովսէփայ Աղօթքը, եւ Էջմիածնի Թ. 1755 ձեռագրի մէջ՝ ըստ Մխիթարի մերժուած գրքերի ցուցակին՝ գտնուում է Հին կտակարանի նահապետների պատմութիւնից յետոյ, թէեւ, ճշմարիտ է, ոչ անմիջապէս։ Միւս կողմից նորան հետեւում է — այստեղ արդէն անմիջապէս — Ասանէթի պատմութիւնը, նա է, իմ կարծիքով, Յովհաննէս Սարկաւագի Ասանէթի Աղօթքը։ Վերջին պարագան կարող է մեզ բացատրել, թէ ինչու այնտեղ՝ որ տեղ Մխիթար Այրիվանեցու ցուցակի մէջ զետեղուած է Յովսէփայ Աղօթքը, Յովհաննէս Սարկաւագը անուանում է Ասանէթի Աղօթք. էապէս այդ երկու զանազան Աղօթքները, լրացնելով միմեանց, կազմում են մի ամբողջ պատմութիւն՝ Յովսէփի եւ Ասանէթի մասին։

Արտաքին կողմից նոցա կապակցութիւնը, որ հիմնուած է բովանդակութեան միութեան վերայ, յայտնի է նրանից, որ Հայոց ձեռագրերում նոքա միասին են գտնուում, ինչպէս որ պատահում է եւ հետեւեալ ցուցակներում, զոր օրինակ եւ մեր 1441 թ. ցուցակում (Էջմ. ձեռագր. Թ. 1755)։ Այստեղից հասկանալի է, որ հայ գրականութեան մէջ մի քանի անգամ յառաջ բերուած անվաւերական գրքերի ցուցակների կազմողները կարող էին բոլորովին միմեանց չհակաճառել, եթէ մէկը նահապետների պատմութիւնից յետոյ յիշատակէր Յովսէփայ Աղօթքը իսկ միւսը Ասանէթինը. եւ եթէ թոյլ տանք այս բոլորից յետոյ, որ իւրաքանչիւրը նոցա-

նից, անուանելով մի մասը, ի նկատի է ունեցել ամբողջ Յովսէփի եւ Ասանէթի անվաւերականը, ինչպէս եւ այժմ տեսնում ենք, որ կազմուած է Յովսեփայ կտակից կամ Աղօթքից եւ Ասանէթի Աղօթքից կամ Պատմութիւնից։ Շատ հետաքրքիր կը լինէր պարզաբանել, թէ ինչ համեմատութեան մէջ է գտնուում մեր Հայոց Յովսէփայ Աղօթքը Յունաց համանուն անվաւերականի հետ, որով օգտուում էր Որոգինէսը իւր հոգու վերայ ունեցած հայեացքի հաստատութեան համար (Richard Simon, Bibliothèque critique t. II., p. 237 եւ հմմ.) եւ որից ներկայումս մնացել են միայն քանի մի հատուածներ Որոգինէսի մօտ (Richard Simon, l. c., q. 239. նոյնպէս տես Migne, Dict. des apocryphes, t. I, p. 705—706)։ Բայց իմ հայ ձեռագրից դուրս բերած կտորները դժբախտաբար անբաւականացուցիչ են դուրս գալիս։

---

Գիտնական Ուսուցչապետին յօդուածին երկու վերջին հատուածներուն ներուի մեզ քանի մը տող կցել։

Նախ Ադամայ եւ Եւայի մասին յերիւրեալ անվաւերական գրքերու հայ թարգմանութենէն Պր. Մառ գիտէ Հ. Զարբհանէլեանի հետ միայն “Պատմութիւն վարուց Ադամայ եւ Եւայի„։ Սակայն պէտք չէ Կարիէրի (Nouv. Mél. orient.) եւ Հ. Զարբհ.ի հետ (Մատդրն. հայկ. թարգմ. նախնեաց, 1889 էջ 188) Մխ. Այրիվանեցւոյ (Պատմ. Ս. Պետրբ. էջ 33) “Ադամայ„ բառովն՝ Ադամայ տրուած մի միակ գիրք մ'իմանալ։

Մառ ուղղելով Կարիէրի մէկ սխալն՝ կ'ըսէ թէ “Էջմիածնի մատենադարանը կայ անվաւերական գիրք մը Ադամայ վրայ„։ Մենք Էջմիածնի տպագրեալ Մայր ցուցակով (Թիֆլ. 1863) միայն զննեալ՝ կը գտնենք նաեւ Թ. 1995 գ. «Պատմութիւն Ադամայ եւ Եւայի» որ անշուշտ զատ օրինակ մըն է Մառի տեսածէն, որ

"Պատմութիւն վարուց Ադամայ եւ Եւայի" վերնագրով յառաջ կը բերէ, եթէ միայն կարելի է ապահովապէս ընդել Մայր ցուցակի կազմողին ճշդութեան վրայ: Սակայն Էջմիածնի մատենադարանը կայ նաեւ "Պատմութիւն Ապաշխարութեան Ադամայ եւ Եւայի նախաստեղծին թէ որպէս արարին" անվաւերականը (Մայր ցուցակ, Թ. 914 ծղ), որուն նաեւ Հ. Զարբհան. չէ "հանդիպեր:" Ծանօթ է մեզ նաեւ այս անվաւերականին թարգմանութեան ժամանակն: Գրիգոր Տաթեւացի (Գիրք հարցմանց, Կ. Պոլիս, 1730, էջ 544) Յովհ. Օձնեցւոյ վրայ խօսելուն առթիւ կ'ըսէ. "Այլ որ ճԾ ամաւ եկին ի Հայք՝ Ասորիք արք քաջաբանք, եւ կամեցան սերմանել զաղանդն Նեստորի, որք նզովեալ որոշեցան. բայց ոմանք ընկալեալ էին եւ թարգմանեալ ի նոցանէ գիրս սուտս զԳօրտոսակ, զԿիրակոսակ, զՊ(օ)ղ(ոս)ի տեսիլն, զԱդամայ Ապաշխարութիւնն եւ զԴիաթեկ զՄանկութեան Տեառն[1], եւ զՍեբիոս, եւ զճիւն օրհնութեան, եւ զԱնթաքչելի մատեանս, եւ զԱւետարանի մեկնութիւն զՄանեայ: Եւ որ հաւատայ նոցա նզովի:"

Թէ արդեօք Ադամայ անվաւերականներէն է հետեւեալը, կամ ԺԲ նահապետաց կտակները, չենք կարող ստուգել. "Պատմութիւն նախահարց" (Մայր ցուց. Թ. 2218 բ.:)[2]

Վերջին Թ. հատուածին մէջ Մառ ուզելով միաբանել զՄխ. Այրիվանեցի եւ զՅով. Սարկաւագ,

---

[1] Կիրակոս Գանձակեցի, որմէ բառ առ բառ առնուած է ամբողջ կտորս, կը դնէ (Տպ. Մոսկուա, 1858, էջ 29). "զԴիաթեկ, զՄանկութիւն Տեառն": Այս թարգմանութիւնք կատարուած են ըստ Կիրակոսի՝ "ի տասներորդ ամի տեառն Աբրահամու, եւ ՅԼԷ թուին Հայոց" Ասորւոց գալստեանէն ետեւ:

[2] Հայերէնագէտ Ուսուցչապետն Ն. Տէզա ի Բատուա կը գրէ մեզ՝ թէ Ադամայ վարուց սկիզբներն յիշուող Բարեխօսն (տ. վերն՝ էջ 25) բառին դիմաց Մառ ի ծանօթութեան կը դնէ Ἀμιλαβὲς բառը, զոր կարելի էր, կըսէ Տէզա, εὐλαβής կարդալ, եթէ Հայք այս բառը "Բարեխորհ" կը թարգմանեն սովորաբար, այլապէս կրնայ ըլլալ εὔλογον.

կը ջանայ ցուցընել՝ թէ Այրիվանեցւոյ յիշած "Աղօթք Յովսեփայ" եւ Սարկաւագի "Ասենիթի աղօթքը" տարբեր են իրարմէ, եւ կը յաւելու՝ թէ "Աղօթք Յովսեփայ" ըսուածը նոյն է "Կտակ Յովսեփայ" հետ, եւ "Ասենիթի աղօթքը" նոյն է "Պատմութիւն Ասանեթայ" կոչուածին հետ։

Մտադիր կ'ընենք յարգելի Ուսուցչապետին, որ Էջմիածնի տպագրեալ ցուցակն այս մասին ալ քիչ մ'աւելի լուսաւորութիւն կու տայ։ Ահիկայ մեր առջեւ կը դնէ. (անշուշտ շատերէն միայն մէկ քանին.)

1. Պատմութիւն Յովսեփայ արդարոյ, Թ. 1737, ժե։

2. Վասն Յովսեփայ թէ ո՞րպէս վաճառեցաւ յեղբարցն յԵգիպտոս, Թ. 914 ժդ. եւ Թ. 918 ճհը։

3. Կտակ Յովսեփայ Նահապետին, Թ. 1714 դ։

4. Կտակ Յովսեփայ վասն Նախանձու։ Թ. 922 ժզ. եւ Թ. 1714 դ։

5. Գիրք Յովսեփայ (՞) Թ. 159։

6. Պատմութիւն Յովսեփայ եւ կնոջ նորա Ասանեթայ, Թ. 155 եւ 160։

7. Պատմութիւն Ասանեթայ, Թ. 924 ժզ։

Եթէ ասոնք հետազօտուէին, կարելի էր աւելի լուսաւոր գաղափար ունեցուիլ։ Սակայն կրնանք ապահովապէս ըսել՝ որ վերոյիշեալ չորս անվաւերականք իրարմէ զատ զատ գործեր են։ Ասոր կը վկայէ մեր մատենադարանի մէկ ձեռագիրն, որ միայն այս կարգի իրեր կը բովանդակէ։

Այս ձեռագիրն (Թ. 88) գրեալ 1388ին կը բովանդակէ ի սկզբան եկեղեցականի մը գրութիւնն, որ կը նմանցընէ զՅովսէփ՝ Քրիստոսի։ Կը յաջորդէ Պատմութիւն Յովսեփայ, առանց վերնագրի այսպէս՝

1. "Այս երանելիս զԸ եւ զԺ ամաւ վարեցաւ առաքինութեամբ . . . " եւ կը պատմէ Յովսեփայ պատմութիւն մինչեւ Յակոբայ Եգիպտոս գալը։ Ասոր կը յաջորդէ՝ վերնագրով,

2. "Պատմութիւն Ասանեթի զոր խօսեցաւ։ Եւ եղեւ յամին յառաջնում. . . " կը բովանդակէ Յովսե-

փայ պսակումն ընդ Ասանեթայ։ Ի վերջն՝ “Եւ կատարեցաւ պատմութիւն Ասանեթայ„։ Կը յաջորդէ՝

3. “Աւրհնութիւն խոստովանութեան Ասանեթայ։ Մեղայ...„ որ ինը տուն է։ Վերջինն է՝ “Մեղայ տէր մեղայ առաջի քո ես հարան մեծի որդւոյ Թագաւորին։„ Կը յաջորդէ վերնագրով՝

4. “Այլափոխութիւն։ Մինչեւ եկն Յուսէփ զօրաւոր Աստուծոյ...„ որ կը պատմէ Փարաւոնի որդւոյն դէպքն։ Այնուհետեւ

5. Կտակ ԺԲ Նահապետաց։

Յայտնի է ուրեմն որ զատ զատ բաներ են Ասանեթի աղօթքն ու պատմութիւնն, Յովսեփայ պատմութիւնն, աղօթքն ու կտակն, որ ԺԲ նահապետաց կտակաց հետ կը գտնուի շատ տեղ։

Ձեռագրիս բովանդակութենէն 2—4 հրատարակուած է (Բազմավէպ 1885—6, եւ Կարիէր, N. Mél. or.)։ Աւելորդ է ըսել՝ որ երկու հրատարակութեանց եւ այլ ձեռագրաց մէջ շատ տարբերութիւնք կան։ Այս մասին առիթ կ'ունենանք աւելին ըսելու։

Հ. Գ. Գ.

---

Ժ.

Սարգիս Շնորհալին (ԺԲ. դար) մերժուած գրքերի թւում անուանում է Քրիստոսի Մանկութիւնը։ (Մատ. հայկ. թարգ. էջ 195, ծանօթ)։ Մխիթար Անեցին (ԺԳ. դար) պատմում է (Մխիթարայ Անեցւոյ Պատմութիւն. ի լոյսած Ք. Պ. 1879. Ս. Պետերբուրգ, էջ 36), որ Բ(ա)խիրան Մահմետին կարդացել է մի գիրք, որ կոչւում էր Քրիստոսի Մանկութեան գիրք։ Կարելի է կարծել, թէ այդ գիրքը յայտնի էր Մխիթարին հայերէն լեզուով։ Սակայն մի քիչ յետոյ նոյնպէս ԺԳ դարու մատենագիր Վարդանը անտարակոյս օգտուել է Քրիստոսի Մանկութիւն կոչուած անվաւերական վէպով. նա թւում է թագաւոր-մոգերի անունները, որոնք պատահում են անվաւերականում, եւ հաղորդում է

անվաւեր մանրամասնութիւններ Մանուկ Յիսուսի ճանապարհորդութեան մասին դէպ ի Եգիպտոս։ (Տես Ev. Prud'homme, Extrait du livre intitulé Solutions des passages de l'Écriture-Sainte etc., Journ. As. 1867, XI, pp. 100, 161)։ Վարդանի, Համառօտ Աշխարհագրութեան հեղինակի ասելով Փրկչի եկեղեցու բակում, Մոկաց աշխարհում, գտնւում է մոգերի (անվաւեր) Թագաւոր Գասպարի շիրիմը։ ԺԳ դարու վերջում Մխիթար Այրիվանեցին մերժուած գրքերի թւում հաշւում է Յիսուսի Մանկութիւնը. (Ժամանակագր. Մխիթ. Այրիվ. Հրտ. Ք. Պատկ. Պետր. 1869, էջ 359։ Hist. Chronol. par Mkhitar d'Aïrivank, traduite par Brosset, S. P. 1869, p. 22)։ Այս անվաւերականի գոյութեան մասին Հայոց հին գրականութեան մէջ ի միջի այլոց վկայում է եւ իմ գտած Վրաց գրքերի Ցուցակը, որը կազմուած է անցեալ դարու վերջում կամ ներկայ դարու սկզբում. Նորա մէջ հայերէնից վրացերէն թարգմանուած ուրիշ երկերի թւում անուանուած է (Թիւ 177) Տիրոջ Մանկութիւնը։

Հ. Զարբհանէլեան իւր վերջին աշխատութեան մէջ (Մատենադարան հայկ. թարգմանութեանց. Վենետիկ 1889, էջ 196 եւ հետեւ.) անուանում է Քրիստոսի Մանկութեան երեք ձեռագիր. նոցանից մինը, ամենահինը, այն է 1347 թուի, պահւում է Կտուց անապատում, իսկ միւս երկուքը գտնւում են Մխիթարեանց վանական մատենադարանի մէջ Վենետիկում։ Ըստ երկու վերջիններին Հ. Զարբհանէլեան յառաջ է բերում վերնագրերը։ Վենետիկի ձեռագրերը պարունակում են, դատելով վերնագրերից, անվաւերականի հայկական աղբիւրը, որ առաջ եմ բերում քաղուածօրէն եւ պատմելով Յուսիկ վարդապետի ձեռագրից։[1]

---

[1] Յուսիկ վարդապետի ձռգրը՝ որ նուիրել է Ս. Էջմ. վանական մատենադարանին, Թ. 244 in-8°։ Գրութիւն երկսիւն, իւրաքանչիւրը 14, 6×4, 2 սնդ. — Տող 18.—

Մեր յիշատակարանը բաւականին զանազանւում է նոյնատեսակ Եւրոպական լեզուներով եղած յայտնի յիշատակարաններից, ինչպէս այդ նկատեց Հ. Զարբհանէլեան. բայց նա, ըստ երեւոյթին, կապ ունի Յիսուսի Մանկութեան Պատմութեան արեւելեան աղբիւրների հետ, այսպէս օրինակ՝ արաբական انجيل الطفولية ի հետ, հրատարակուած արդէն թարգմանութեամբ հանդերձ Հենրիկոս Սիկէի ձեռքով (Trajecti ad Rhenum, MDCXCVII)։ Եթէ չեմ սխալուում, միայն արեւելեան աղբիւրների մէջ է պատահում զոր օր. ներկարարի մօտ պատահած Յիսուսի արկածի պատմութիւնը, որ կայ հայկական անվաւերականում։ Առհասարակ կարեւոր կարող է համարուել հայկական աղբիւրի հետազօտութեան համար պարսկական طفولیت حضرت مسیح, որի գոյութեան մասին մենք իմանում ենք ի միջի այլոց եւ Angeli de la Brosseի պարսկական բառարանից Tinctoria ars բառի տակ (տես. H. Sike, l. c. p. 55)։ Որ մեր հայկական անվաւերականը ունի պարսկական ծագում, այդ երեւում է գլխաւորապէս այն առաջնակարգ դերից, որն ըստ այդ անվաւերականին պատկանում է Պարսից մոգ թագաւո-

---

կազմը՝ կաշուէ. — Թուղթը՝ հաստ, մի քիչ դեղին. — Իջաթիւը՝ ամէն մի տետրակին վրայ հայ տառերով։ — Գիրը՝ նօտրգիր — Զարդերը՝ գլխատառեր միջակ մանրանկարներով. — Գրիչը՝ Պարսամ քահանայ. — Գրութեան թուականը՝ ՌՃԺԵ (1666) — Հանգամանքը՝ սկզբից պակաս է երկու թերթ, տեղ տեղ թերթերից կտրուած են կտորներ, տեղ տեղ սրբուել է թանաքը. — Բովանդակութիւնը. 1. Առակների հաւաքածու, որ վերագրուում է Վարդանին, սակաւ բացառութեամբ նոյն լիակատար խմբագրութեամբ, ինչ որ ներկայացնում է սոյն ժողովածուի Պարիզեան ձեռագիրը՝ մասամբ Ս. Մարտէնից հրատարակուած. 2. Յիսուսի մանկութիւնը եւ 3. Պղնձէ քաղաքի առասպելական պատմութիւնը։ Այս ձեռագրի առաջին եւ երրորդ յօդուածների վրայ ընթերցողը տեղեկութիւններ կըգտնէ մեր այն հետազօտութեան մէջ, որ պատրաստում ենք Հայոց գրաւոր առակների վերայ. տես նոյնպէս մեր նկատողութիւն խորամանկ Աղուէսի եւ գայլի մասին "կենդանի Հնութեան,, (Жив. старина) չորրորդ տետրի մէջ։

րին եւ առհասարակ պարսիկ ժողովրդին: Այդ իսկ անվաւերականի օգտին են ասում փոխ առնուած խօսքերը, ինչպէս դուֆան — نکاح, աւելի եւս ջոֆան — نکاچ փայտ գնդակախաղի համար, որ պատահում է Յիսուսի Մանկութեան Պատմութեան հայ աղբիւրի մէջ: Առհասարակ մեր յիշատակարանը գրուած է այն յետագայ դարերի գրականական լեզուով, որը յատուկ է հայկական գրաւոր հեքիաթներին եւ առակներին, որոնք, որքան յաջողուեց ինձ առժամանակ պարզել, սերտ կապերով են կապուած նոյնատեսակ երկերի հետ արեւելեան ազգերի, գլխաւորապէս Պարսից եւ Արաբացւոց գրականութեան մէջ: Արժ. Յուսիկ վարդապետի ձեռագրում բաց են թողնուած վեց գլուխ, որոնք բացառապէս վերաբերում են Մարիամ կուսին, Նորա ծնողներին, Նորա ծննդեանը, տաճարին ընծայմանը եւ այլն, որոնք կան Վենետկի Մխիթարեանների մատենադարանի ձեռագրերում. յետոյ, ինչպէս կարելի է նկատել եւ իմ քաղուածներից, վերնագրերը ձեռագրում անհոգ կերպով են դրուած. մերթ նոքա վերաբերում են յաջորդ, մերթ՝ նախընթաց բնագրի: Անվաւերականը սկսուում է այսպէս:

1. “Եւ վաղիւն յարուցեալ առ զՄարիամ ուրախութեամբ սրտի առաջի իւր եւ ասէ. մեղա՛ տեառն աստուծոյ. քանզի բազում անգամ զըպարտեցիքզկուսութիւն քո սուրբ եւ ոչ յառաջ իմացա եւ ծանեա եթէ ճշմարիտ է բանդ զոր ասես. եւ մինչ դեռ Յովսէփ զայս ամենայն զմտաւ ածէր խաւսէր եւ զբաղ . . . :„

Այս կէս խօսքով ընդհատուում է բնագիրը. հետեւեալ հինգ տողերը մի փոքր էլ աւելի կտրուած են ձեռագրի թերթի կտորի հետ. պահպանուած մասից իմանում ենք, որ Յովսէփին գալիս է Աննա դպիրը, որը առաջին ողջոյններից եւ հարցմունքներից յետոյ հիւրասիրուեցաւ. ճաշի ժամանակ նա նկատում է, որ Կոյսը յղի է (յղի ծանրացեալ): Աննան

յայտնում է այդ Զաքարիա քահանայապետին, եւ Յովսէփին՝ կուսի հետ միասին՝ դատապարտան են կոչում. դատապարտանում յայտնուում է նոցա անմեղութիւնը. ոչ Յովսէփ եւ ոչ Մարիամ չեղուած էին Աստուծոյ պատուիրանքներից: Ճշմարտութիւնը ակնյայտնի անելու համար ձեռնարկում են ջրով փորձելու:

"Ասէ քահանայապետն. արբուցից զջուրն յանդիմանութեան. եւ տէր յայտնեսցէ զգործն ձեր եթէ ճշմարիտ էք: Յայն ժամ առեալ քահանայապետն Զաքարիա զջուրն ի փորձութեան[1] ի ձեռին իւրում եւ կոչեաց զՅովսէփ առաջի իւր եւ ասէ ցնա. այր դու հայեաց ի ծերութիւն յալեաց քոց. եւ տես յայտնապէս աչօք քո զքեզ կենաց եւ մահու եւ մի տար կամաւ զանձն քո ի փորձութիւն եւ ի կորուստ. ասէ Յովսէփ. կենդանի է տէր եւ սուրբ է անուն նորա. որ բնաւ չար զանձնէ իմէ ոչ գիտեմ. այլ եթէ տէր կամեսցի զիս անմեղութեամբ դատել, կամք տեառն լիցին: Եւ առ ժամայն ետ քահանայապետն ըմպել զջուրն Յովսէփա եւ ասէ. գնա փութով երթալ եւ դառնալ. եւ Յովսէփ ընթացեալ գնաց եւ գա[յ]ր իջանէր ողջանդամ եւ անփորձ մնալով եւ իբրեւ տեսին ամենքն թէ ոչ վնասեցաւ, երկեան յոյժ:"

Զնայելով իւր անմեղութեան, Յովսէփ քաղաքի վայրահաջութիւններից եւ իւր ծանօթների արած ծաղրածութիւններից ազատուելու համար որոշեց ծննդեան ժամանակ տանել Մարիամին հեռաւոր աշխարհ:

2. "Յաղագս ծածուկ գնալոյ նոցա. երթալ ի Բեթղահեմ:"

Յովսէփ պատրաստեց պաշար, ժողովեց կահկարասիքը եւ ճանապարհ ընկաւ Ովսէ կրտսեր որդու եւ Մարիամի հետ, որին նստեցրեց գրաստի վերայ:

---

[1] Պէտք երկուսից մինը լինի՝ կամ "փորձութեան" կամ "ի փորձութիւն:"

Մարիամ ճանապարհին տեսիլք տեսաւ, որոնց մասին եւ խօսում էր Յովսէփի հետ, երբ նա յանկարծ ծննդեան մօտ լինելը տեսնելով, ասաց Յովսէփին։

"Իջոյ զիս ի գրաստէ աստի. զի մանուկն ստիպէ զիս։ Յովսէփ ուրախացեալ ասէ. ուր կամիս զի տարայց զքեզ։ Ասէ Մարիամ. փութա իջոյ զիս վաղվաղակի. զի նեղէ զիս մանուկս։ Ասէ Յովսէփ. զինչ լինիմ արդեաւք, որ պատահեաց ծնունդ դորա ոչ ի շէնս այլ ի տեղի անապատի եւ անմարդաբնակ. որ ոչ գոյ ուրէք աւթեւանք։"

Մօտակայքում երեւեցաւ մի այր, ուր վատ եղանակ պատսպարւում էին հովիւները խաշինքի հետ միասին։ Յովսէփ թողեց այրում Մարիամին եւ Ովսէին, իսկ ինքը վազեց մանկաբարձ որոնելու. շուտով նա հեռուում տեսաւ մէկին, որն Եւան էր. դորա հետ էլ վերադարձաւ Յովսէփ ծննդականի մօտ։

3. "Պատմութիւն յաղագս նշանացն եւ սքանչելեաց որ գործեցաւ ի յայրն." եւն։ Ծնւում է Քրիստոս հրաշքով, որ կուսի անարատութիւնն է վկայում։ Եւա պատմում է հրաշքի մասին Երուսաղէմից դեռ նոր եկած մի կնոջ, բայց այդ կինը որ կոչւում էր Սողոմէ, չէ հաւատում կուսի անմեղութեանը. իբրեւ պատիժ՝ Սողոմէի ձեռքը չորանում է. երբ նա հրաշալի բժշկութիւն է ստանում, հրեշտակը հրամայում է նորան պատահածի մասին քաղաքում լուր չտարածել, որպէս զի այս ամէնը չհասնի Հերովդէսի ականջը։

4. "Յաղագս վասն հրեշտակին կոչելոյ զառ հովիւսն զաւետաւոր բարբառն եւ յայրն փութով հասեալ նոցա բազում ընծայիւք երկրպագութիւն տեսանելով։"

Մանրամասնօրէն նկարագրւում է այս գլխում ի միջի այլոց մոգերի գալուստը երկրպագութեան արեւելեան աշխարհներից. մոգերի առաջնորդներն էին երեք եղբայրներ, Պարսից թագաւոր Մելքոնը, Արաբների թագաւոր Բաղտասարը եւ Հնդկաց թա-

դաւոր Գասպարը։ Պարսից Թագաւորի ընծաների Թւում գտնուում էր մի ձեռագիր ապագայ Մեղքերի Թողութեան մասին, որ տուեց Աստուած Ադամին իբրեւ սփոփանք կորուսած Դրախտի համար. ձեռքից ձեռք անցնելով, վերջապէս հասաւ Կիւրոսի ձեռքը, եւ այդ օրից ի վեր նա պահուում էր Պարսկաստանում։

5. «Յաղագս վասն գալստեան տեառն քառասնօրեա ի տաճարն։» Այս գլխում ի միջի այլոց պատմուում է ութերորդ օրը թլփատման եւ Նորան Յիսուս անունը տրուելու մասին։

6. Այս գլխի վերնագիրը կպցրած է ձռագրում։

Նորա մէջ պատմուում է թէ ինչպէս Բեգովը անունով «Այսօրէն մարդը Երուսաղէմ քաղաքից» իմաց տուեց Հերովդէսին, որ մոգերը ժամանեցին այցելել Բեթղեհէմը, երկրպագել Յիսուսին եւ հեռանալ։ Մանուկների կոտորածը այս իսկ գլխի յաջորդ նիւթն է կազմում։

7. «Յաղագս վասն դարձեալ նենգութեամբ Զաքարիա զհայրն Յովհաննու» եւ այլն։ Հերովդէս նոյնպէս խստիւ որոնում էր Յովհաննէս մանկանը։ Զաքարիայի կինը փախաւ Յովհաննէս որդու հետ անապատ լեռները։ Յովհաննէսի մօր աղօթքով գետինը բացուեցաւ եւ կլանեց մօրը՝ որդու հետ միասին, տալով Նրանց այդպիսով ապաստան։ Զաքարիա հօրից ոչ մի տեղեկութիւն չստանալով նորա որդու ուր գտնուելու մասին, Հերովդէս մարդիկ ուղարկեց, եւ Զաքարիա սպանուեցաւ տաճարի մէջ։ Սրբութիւն Սրբոցի մէջ սեղանն ողողուեցաւ Զաքարիայի արիւնով, իսկ նորա մարմինը անհետացաւ։

8. Հետեւեալ ըստ կարգին ութերորդ անվերնագիր գլխում պատմուած է Յովսէփի փախուստը Եգիպտոս Մարիամի եւ Յիսուսի հետ։ Պանդուխտները ընկան քառասուն յելուզակների առաջնորդի ձեռքը, որի մօտ Յիսուս Քրիստոս կատարեց մի քանի

հրաշքներ։ Այն աւազակը, որ խաչուած էր Փրկչի աջ կողմը, այդ առաջնորդի Դեմաս որդին էր։

Շարունակելով իրենց ճանապարհը, քաղաքներից մէկում մանուկ Յիսուսը, որպէս զի զուարճացնէ մանուկներին եւ ցոյց տայ իրեն, բարձր տանիքից ցած իջաւ արեւի շողի վերայով, որ թափանցում էր պատուհանից։

Մշտապէս հալածուելով Հերովդէսից, Յովսէփ ընտանիքի հետ վերջապէս հասաւ մի քաղաք, որի դռների վերայ նկարուած էին թալիսմաններ. այստեղ Յիսուս գնաց Ապողոնի տաճարը նայելու։

9. “Յաղագս վասն Յիսուսի խորտակելոյ զկուռսն եւ կործանել զմեհեանս դիւաց. եւ բազմութիւնք մարդկան որ մեռան անդ եւ յարութիւն որ եղեւ։„

Յետոյ այստեղ պատմուում է թէ ինչպէս նոյն քաղաքում Յովսէփին՝ ընտանիքի հետ միասին հրաւիրեց մի հարուստ մարդ. այդ Երուսաղէմից եկած Հրեայ Եղիազարն էր, Ղազարոսի, Մարիամի եւ Մարթայի հայրը։ Նոքա պանդուխտներին մօտիկ ընկեր դարձան։ Հերովդէսի մահից յետոյ փախստականները իրեն իսկ Յիսուսի կամքով եւ հրեշտակի ազդմամբ համարձակուում են վերադառնալ հայրենի աշխարհը, առաջին ժամանակներում՝ իսկապէս նորան սահմանակից երկիրը։

10. “Դարձեալ հրեշտակին երեւել գալ ի յաշխարհն իւր Նազարեթ„ եւայլն։ Ճանապարհին դէպ ի Նազարէթ պանդուխտները կանգ առան Արաբիայի սահմաններում գտնուող մի քաղաքում. քաղաքը լի էր մեհեաններով. դեւերը տաճարներից քաղաք թափուեցան, որպէս զի բնակիչներին եկուորների դէմ գրգռեն, բայց քաղաքացիներից ոչ մէկին չգտան։ Յիսուս կործանեց կռապաշտների բոլոր աղօթատները. մանուկ Յիսուս այն ժամանակ չորս տարեկան էր։ Նա սիրով էր վարվում հասակակիցների հետ, որոնք նոյնպէս փոխադարձաբար հնազան-

դում էին Նորան, կատարելով Նորա ամէն մի ցանկութիւնը։ Ցիսուս բժշկում էր մանուկներին ախտերից եւ հարուածներից եւ ամէն կերպով պաշտպանում էր նոցա։ Միանգամ Նորատի Աբիասը, Թամարի որդին, որ քնած էր բարձր պատշգամի վերայ, ցած ընկաւ եւ սպանուեցաւ. մանուկները երկիւղից յանցանքը ձգեցին Ցիսուսի վերայ. դատաստանում Իրեն պաշտպանելու համար Ցիսուս գլխաւորապէս յենւում էր մի պարագայի վերայ. ուղիղ է, մանուկ –ընկերներս միաձայն վկայում են իմ յանցանքը, ասում էր Նա, "բայց ոչ ոք չէ վկայում, որ նոքա ճշմարիտ են ասում„։ Բայց դատաւորը անողոքելի էր. այն ժամանակ Ցիսուս արդարացրեց Իրեն սպանուածի բերանով, որին Նա առժամանակ յարութիւն տուեց։

11. "Ցաղագս վասն ելանելոյն նոցա յեգիպտոսէ եւ գալ ի կողմանս հարաւոյ յաշխարհն Արաբիա. տղայութիւն[1] զոր առնէր Ցիսուս եւ մահուան որ եղեւ յարութիւն եւ մեռելոց։„

Արաբիայից պանդուխտները եկան Ասորւոց աշխարհը, Շահապրաւտ քաղաքը։ Ցիսուս այդ ժամանակ հինգ տարուան եւ երեք ամսուան մանուկ էր։ Ցիսուսի կեանքում պատահած գլխաւոր դէպքն էր Շահապրաւտ եղած միջոցին Նորա արշաւանքը մանուկների հետ դէպ ի անապատ. մանուկները դիտաւորութիւն ունէին որսորդութիւն անելու, բայց ոչ մի երէ չերեւեց, եւ դեռ ծարաւից ու քաղցից էլ սկսեցին նեղուել. այն ժամանակ Ցիսուս փայտի հարուածով ժայռից ջուր բղխեցրեց. հոսած աղբիւրի մէջ մանուկները ի դէպ ձուկ բռնեցին եւ տուն դարձան հարուստ աւարով, բայց այդ միջոցին քաղաքից անհետացաւ Շարուհի փոքրիկ Մոշէի որդին. ծնողները շփոթութեան մէջ ընկան, դատ բացուեցաւ.

---

[1] "Ցղայութիւն„ նշանակում է՝ մանկութիւն, չարաճճիութիւն, բայց կարող է նշանակել եւ "արիութիւն, հերոսութիւն, կորճութիւն։„

մեղադրեցին Յիսուսին. դատաստանում Յիսուս արդարացրեց իրեն դարձեալ հրաշքով:

12. "Յաղագս փոխելոյ նոցա անդ(ի) եւ գնալ յերկիրն Ասորիստան" եւ այլն: Ասորիքից նժդեհները ուղեւորուեցան դէպ ի Քանանացւոց երկիրը. այստեղ Մադիամ քաղաքում մանուկները կամեցան չարչարել նորատի անծանօթին, վեցամեայ Յիսուսին. Յիսուս առաւ հող, նորանից շինեց մի թռչուն եւ կենդանութիւն տալով իւր շնչով, ազատ թողեց, իսկ մանուկներին առաջարկեց բռնել նորան: Յետոյ նա առաւ գետնից փոշի եւ ցրուեց. օդը լցուեցաւ մժեղներով, ճանճերով, մեղուներով ու պիծակներով, եւ քաղաքը հանգստութիւն չունէր: Յովսէփ եւ Մարիամ վճռեցին անզուսպ Յիսուսին տալ ուսման ("ի գործ արուեստի ի դպրութիւն"):

13. "Յաղագս երթալոյ նոցա յերկիրն [Քանանու] եւ տղայութեան զոր առնէր Յիսուս եւ մահուանն որ եղեւ իսկ եւ յարութեան եւ մեռելութեան զոր արար Յիսուս:"

Իսրայելացւոց երկրում, Բոդոսորոն քաղաքում թագաւորում էր Բարէյեսու անունով մի երկիւղած հրէայ: Բարէյեսուն սիրալիր կերպով ընդունեց Յովսէփին, երբ նա ընտանիքի հետ միասին հասաւ Բոդոսորոն, խոստացաւ նորան իւր հովանաւորութիւնը, եւ Յիսուսի կրթութիւնը յանձնեց Գամաղիէլ ուսուցչին: Եօթնամեայ Յիսուս շփոթեց ուսուցչին իւր հարցերով եւ Գամաղիէլ չուզեց իւր մօտ պահել Յիսուսին: Յովսէփ Գամաղիէլի խորհրդով սկսեց Յիսուսին սովորեցընել հիւսնութեան արուեստը. այդ միջոցին երկու անգամ Յիսուս հրաշք գործեց եւ երկու անգամն էլ քարշմամբ երկարացնելով փայտը Յովսէփի ձեռքում պէտք եղածին չափ. այդ դէպքերից մինի ժամանակ Յովսէփ թագաւորին ընծայ էր պատրաստում մի գեղեցկաքանդակ տախտակ ("տախտակ մի գեղեցիկ քանդակեալ")

իսկ միւսի ժամանակ Թադաւորի պատուէրով աշխատում էր պալատի շինութեան վրայ։

14. «Յաղագս գնալոյ նոցա ի քաղաքն Տապարիա, ներկութեան եւ տղայութեան զոր առնէր Յիսուս։»

Տապարիա քաղաքում Յովսէփ ընտանիքի հետ միասին ապաստան գտաւ Ուղ ներկարարի մօտ։ Ուղ յանձն առաւ իւր արհեստը սովորեցնելու Յիսուսին, որն արդէն ինը տարեկան եւ երկու ամսական էր։ Միանգամ Ուղ ամբողջ քաղաքից պատուէրներ ժողովեց, զգուշութեամբ դարսեց ներկերը եւ ինքը գիւղ գնաց գործի. երթալուց առաջ նա պատուիրում էր իւր աշակերտին զգոյշ լինել, նայել տունը եւ խանութի իրերը («դուքանիս իրաց»), որպէս զի ամէն ինչ ամբողջ եւ պահպանուած մնայ. «Մեզ պէտք է, ասում էր Ուղ, հաշիւ տալ քաղաքացիներին եւ գանձարանը հինգհարիւր դենար ձգել»։

Բայց հազիւ տէրը անհետացաւ, Յիսուս բացեց պահարանի դուռը, առաւ ներկերը եւ բոլորը Թափեց կապոյտ ներկի տակառի մէջ. յետոյ նա Թողեց տունը։

«Եւ ելեալ գնաց ըստ սովորութեան իւրում ի խաղալ. ո[ւ]ր մանկունքն քաղաքի ժողովեալ էին. եւ ընդ նոսա գաւառէմարտ եղեն (այսպէս) զամոլաջիլս կարճեցուցեալ. եւ տղայքն անկեալ լային ի վերայ երեսաց իւրեանց եւ ոչ կարէին կանգնել. եւ նա ձեռն գնէր եւ հաստատէր զնոսա. փչէր ընդ դէմ երեսաց տղայոց եւ կուրացուցանէր զաչս նոցա. եւ դարձեալ ձեռն ածէր եւ լոյս տայր նոցա. եւ առեալ զփայտն ի ձեռն եւ ձգէր ի մէջ տղայոցն. եւ առիւծ լինէր. զամենեսեան փախստական առնէր. եւ զորս.ջարեալ (այսպէս) վիշանդն՝ ձեռն ածեալ եւ բժշկէր զնոսա. եւ ածէր զմատունս ի լսելիս տղայոցն եւ խլացուցանէր. դարձեալ փչէր եւ լսողութիւն ածէր. առեալ գ.քարն ի ձեռն փչէր եւ իբրեւ զհուր

բորբոքէր եւ ձգէր առաջի տղայոցն. կիզուր զհողն իբրեւ զխուիւ չոր. եւ դարձեալ առնէր զքարն առաջի բնութեանս (տյողեօ) փոխեալ. առեալ զտղայսն միաբանեալ երթեալ յեզր ծովուն. եւ առեալ զգունդն եւ զճոկանն ընթացիւք երթա[յր] ի վերայ ջրոյն իբրեւ ի վերայ պաղի խաղալ[ե]օք:»

Մանուկները ափշած էին այն ամէնով, ինչ որ տեսան. եւ գնացին պատմելու քաղաքի բնակիչներին. քաղաքացիները ժողովեցան նայելու հրաշալի մանկան վերայ: Եկաւ Յիսուսին եւ Յովսէփ՝ կշտամբելով թէ ինչու Նա թողեց ներկարարի տունը եւ մոռացաւ տիրոջ յանձնարարութիւնը: Տանը Նորան յանդիմանեց Մարիամ մայրը, թէ արդէն երեք օր է, որ Նա ոչինչ չէ անում: Յիսուս հաւատացնում էր, որ տիրոջ մօտ ամէն ինչ կարգին է, որ Նա ներկարարի բոլոր յանձնարարութիւնները կատարել է: Տէրը վերադարձաւ. տեսնելով Նորան, Յիսուս ուրախութեամբ վազեց Նորան ընդ առաջ եւ խոնարհուեցաւ մինչեւ գետինը: Ուղ սիրալիր կերպով ողջունում էր Նորան, բայց սաստիկ բարկացաւ, երբ նկատեց, որ Յիսուս բոլոր գոյների ներկերը առանց խտրութեան նետել է կապոյտ ներկի տակառի մէջ: Յիսուս հանգստացնում էր ներկարարին, հանգստացնում էր Յովսէփին եւ Մարիամին որոնց գանգատուեց տէրը. Յիսուս հաւատացնում էր, որ Նա սովորել է այդպէս անել իրեն իսկ ներկարարից, եւ վնաս չկայ որ բոլոր ներկերը խառնուած են մի տակառում: Տէրը համբերութիւնը կորցրեց, վերցրեց մի կոփիչ եւ պատրաստուեց ծեծել Յիսուսին. Յիսուս փախաւ, ներկարարը նետեց Նորա ետեւից կոփիչը եւ, վրիպելով, ընկաւ Նորա ետեւից. Յիսուս դուրս եկաւ քաղաքի դռներից, հասաւ ծովին եւ սկսեց վազել ջրի մակերեւոյթի վերայով: Գրգռուած Ուղ սկսեց օգնութեան կոչել քաղաքացիներին. Ինձ կողոպտեց մանուկ Յիսուս կանչում էր Նա: Սկսեցին որոնել փախստականին. որոնեցին եւ ծովափին:

“Եւ եղեալ Յիսուս ի ծովէն նստէր ի վերայ վիմին ի նմանութիւն տղայոյ. գային հարցանէին քաղաքացիքն. մանուկ՝ դու ոչ ես տեսեալ Յիսուս որդի ծերոյն. ասէ մանուկն. ոչ գիտեմ. դարձեալ լինէր ի նմանութիւն երիտասարդի. հարցանէին ցնա. պատան[ե]ակ՝ դու ոչ ես տեսեալ զորդին Յովսէփա. ասէ Յիսուս. ոչ. դարձեալ լինէր ի նմանութիւն ծերոյ. գային հարցանէին ցնա. ալեւոր՝ ոչ ես տեսեալ որդի ծերոյ մի. ասէ ոչ գիտեմ։”

Չգտնելով Յիսուսին, քաղաքացիք բռնեցին Յովսէփին եւ սկսեցին նորան տանջել։ Մինչ այս մինչ այն՝ ներկարար Ուզ, տուն վերադառնալով, նկատեց իւր բակում, որ կոփիչը արմատներ է արձակել, ծածկուել է սաղարթով, ծաղկել է եւ պտուղ է տալիս. իսկ երբ սկսեց նա ներկերը հանել տակառից, տեսաւ որ մի ինչ որ հրաշքով իւրաքանչիւր ներկը պահպանել է իւր բնական գոյնը։ Այս Աստուծոյ ձեռքի գործ է մտածեց ներկարար Ուզ. նա ներողութիւն խնդրեց Յիսուսից, պատմեց հրաշքի մասին քաղաքացիներին, որոնք ազատ թողեցին Յովնէփին, եւ ներողութիւն խնդրելով ընկան Յովսէփի եւ Մարիամի ոտքը։

16. “Յաղագս երթալոյ նորա յԱրեմաթեա քաղաքի եւ տղայութեան զոր առնէր Յիսուս եւ մահուանն որ եղեւ իսկ եւ յարութեան եւ մեռելութեան զոր արար Յիսուս։”

Արդէն ինն տարեկան էր Յիսուս, երբ նա խաղում էր Գալիլիայի Արեմաթեա քաղաքի մանուկների հետ. նոցա ներկայութեամբ նա հրամայում էր ժայռին խոնարհեցնել գագաթը, եւ ժայռը հնազանդւում էր։ Արիմաթեայում Յիսուս կուրացրեց մի պատանի, որ հալածում էր նորան, եւ նորից վերադարձրեց նորան տեսողութիւնը. նոյն իսկ Արիմաթեայում կրկնուեցաւ նորա հետ էապէս միեւնոյն բովանդակութիւնն ունեցող բազում անցքերից մէկը. տղաներից մինին իւր սեփական անզգուշու-

թիւնից կամ իւր ընկերների չարամտութիւնից անակնկալ մահ է հասնում, մանուկները մեղադրում են Յիսուսին, իսկ նա արդարանում է սպանուածի բերանով, որին եւ յարութիւն է տալիս. Արիմաթեայում սպանուածն էր Նորատի Յովաթան Բերիայի որդին („Յովաթա որդի Բերիա՛”), որին ընկերները խռովութեան առքացած ժամանակ հրել էին ջրհորը եւ խեղդել էին։

17. „Յաղագս երկմտելոյ անդի եւ գնալ յարեւելեան լերինն եւ տղայութեան զոր առնէր Յիսուս ընդ մանկունս։”

Արիմաթեայից Յովսէփ ընտանիքի հետ յառաջ էր գնում Գալիլեայի միջով, ուր Յիսուս թափառեց վեց ամիս. Նա խօսում էր մանուկների հետ, բայց մանուկները նորան չէին հասկանում. այն ժամանակ նա նստաւ մի ջրհորի մօտ. մանուկները ջրի էին գալիս քաղաքից, իսկ Յիսուս առնում էր նոցանից սափորները, քարին զարնելով ջախջախում է եւ կտորները ջրհորն էր ձգում. այդպիսով նորա մօտ ժողովուեցու մանուկների բազմութիւն. նոքա չէին համարձակուում տուն գնալ առանց ջրի եւ առանց սափորի, սակայն յետոյ Յիսուս փայփայեց մանուկներին, հրամայեց ծովի (տյողես) ալիքներին վերադարձնել մանուկներին ջրով լի սափորները, եւ այդպէս էլ եղաւ։ Յիսուս հրամայում էր բարձր ծառերին խոնարհեցնել ճիւղերը, նստում էր նոցա վերայ ընկերներին հետ եւ նորից հրամայում էր բարձրանալ, եւ ճիւղերը հնազանդում էին։ Յիսուս բժշկեց բորոտութիւնից մի երկոտասանամեայ մանուկ։

18. „Դարձեալ անդ [ի] գեղ մի գնայ. բժշկութիւն եւ սքանչելիս զոր արար ի հիւանդս։”

Յովսէփ Մարիամի եւ Մանկան հետ գնում է Եմմաուս գիւղը։ Յիսուս մօտակայ Եփայա գիւղում բժշկում է բորոտութիւնից մի հրեայ մանուկ, Յուդայի ցեղից։

19. “Յաղագս վասն Հրեշտակի որ աստ առնել Յովսեփայ գնալ ի քաղաքն Նազարեթ եւ աքանչելեացն եւ բժշկութեան:„

Հրեշտակը երեւում է Յովսէփին եւ հրամայում է բնակուել Նազարէթում. այստեղ Յիսուս, որն արդէն տասնեւերկու տարեկանից անց էր, հաշտեցնում է երկու խռոված մանուկներ — Մաղաքիա եւ Միքիա հարազատ եղբայրներին: Մարիամ մայրը Յիսուսի հետ արած խօսակցութեան մէջ յայտնում է իւր երկիւղը Նորա ապագայի վերաբերմամբ. “Մենք հոգս էինք քաշում Քո մանկութեան օրերին, որ Դու շտապէիր մի որեւէ արհեստով պարապելու,„ ասում էր նա, “բայց Դու չհնազանդեցիր եւ այժմ Դու կատարելահասակ այր մարդ դառար, ի՞նչ պէտք է անես Դու:„ Յիսուս անբաւական էր, որ մայրն էլ չէ հասկանում իւր կոչումը: Պանդխտելով Գալիլիայում, Յիսուս բժշկեց ասորի երեսնամեայ Կիրամին, եւ անդամալոյծ ծերունի հնդկաստանցի հրէայ Բաղտասարին, որ բժշկի որդի էր. Նոցանից առաջինը (Կիրամ) բժշկուեց Բոյսբորոյն գիւղում: Յետոյ Յիսուս ժամանեց Խորտար եւ Ճոտար երկու զինուորներին կռուելիս: Խորտար եւ Ճոտար Արեւելքից Յիսուսին երկրպագութեան եկած մոգերի զօրքիցն էին. այդ զինուորները մնացին քաղաքում (Երուսաղէմում) արքունի ծառայութեան մէջ, երդում տալով մինը միւսին, որ ամէն մի աւար կը բաժանեն: Յիսուս հաշտեցրեց նոցա:

Փրկչի Մանկութեան Պատմութեան հայ աղբիւրը ըստ Յուսիկ վարդապետի ձռգրին վերջանում է Յիսուսի հետեւեալ կարճ խօսակցութեամբ Խորտար եւ Ճոտար զինուորների հետ:

“Ասէ Յիսուս զինչ կամիք առնել ասացէք զճշմարիտն. [ասեն.] որպէս կամք քո հրամայեն. զի այս աւր յայտնի դատաւոր երեւեցար ի միջի մեր զի տեսաք զքեզ. շիջաւ բարկութիւն մեր եւ աստու-

թիւնից կամ իւր ընկերների չարամտութիւնից անակնկալ մահ է հասնում, մանուկները մեղադրում են Յիսուսին, իսկ Նա արդարանում է սպանուածի բերանով, որին եւ յարութիւն է տալիս. Արիմաթեայում սպանուածն էր Նորատի Յովաթան Բերիայի որդին ("Յովաթա որդի Բերիա"), որին ընկերները խաղալութեան տաքացած ժամանակ հրել էին ջրհորը եւ խեղդել էին։

17. "Յաղագս երկմտելոյ անդի եւ գնալ յարեւելեան լերինն եւ տղայութեան զոր առնէր Յիսուս ընդ մանկունս։"

Արիմաթեայից Յովսէփ ընտանիքի հետ յառաջ էր գնում Գալիլեայի միջով, ուր Յիսուս թափառեց վեց ամիս. Նա խօսում էր մանուկների հետ, բայց մանուկները Նորան չէին հասկանում. այն ժամանակ Նա նստաւ մի ջրհորի մօտ. մանուկները ջրի էին գալիս քաղաքից, իսկ Յիսուս առնում էր նոցանից սափորները, քարին զարնելով ջախջախում է եւ կտորները ջրհորն էր ձգում. այդպիսով Նորա մօտ ժողովուեցու մանուկների բազմութիւն. Նոքա չէին համարձակւում տուն գնալ առանց ջրի եւ առանց սափորի, սակայն յետոյ Յիսուս փայփայեց մանուկներին, հրամայեց ծովի (տյոդէս) ալիքներին վերադարձնել մանուկներին ջրով լի սափորները, եւ այդպէս էլ եղաւ։ Յիսուս հրամայում էր բարձր ծառերին խոնարհեցնել ճիւղերը, նստում էր նոցա վերայ ընկերներին հետ եւ Նորից հրամայում էր բարձրանալ, եւ ճիւղերը հնազանդում էին։ Յիսուս բժշկեց բորոտութիւնից մի երկոտասանամեայ մանուկ։

18. "Դարձեալ անդ [ի] գեղ մի գնաց. բժշկութիւն եւ սքանչելիս զոր արար ի հիւանդս։"

Յովսէփ Մարիամի եւ Մանկան հետ գնում է Եմմաուս գիւղը։ Յիսուս մօտակայ Եփայա գիւղում բժշկում է բորոտութիւնից մի հրէայ մանուկ, Յուդայի ցեղից։

19. “Ցաղագս վասն Հրեշտակի որ ասաց առնել Յովսեփայ գնալ ի քաղաքն Նազարեթ եւ աքանչելեացն եւ բժշկութեան։„

Հրեշտակը երեւում է Յովսէփին եւ հրամայում է բնակուել Նազարէթում. այստեղ Յիսուս, որն արդէն տասնեւերկու տարեկանից անց էր, հաշտեցնում է երկու խռոված մանուկներ — Մաղաքիա եւ Միքիա հարազատ եղբայրներին։ Մարիամ մայրը Յիսուսի հետ արած խօսակցութեան մէջ յայտնում է իւր երկիւղը Նորա ապագայի վերաբերմամբ. “Մենք հոգս էինք քաշում Քո մանկութեան օրերին, որ Դու շտապէիր մի որեւէ արհեստով պարապելու,„ ասում էր նա, “բայց Դու չհնազանդեցիր եւ այժմ Դու կատարելահասակ այր մարդ դառար, ի՞նչ պէտք է անես Դու։„ Յիսուս անբաւական էր, որ մայրն էլ չէ հասկանում իւր կոչումը։ Պանդխտելով Գալիլիայում, Յիսուս բժշկեց սուրբ երեսնամեայ Կիրամին, եւ անդամալոյծ ծերունի հնդկաստանցի հրէայ Բաղտասարին, որ բժշկի որդի էր. Նոցանից առաջինը (Կիրամ) բժշկուեց Բոյսբորոյն դիւղում։ Յետոյ Յիսուս ժամանեց Խորտար եւ Ճոտար երկու զինուորներին կռուելիս։ Խորտար եւ Ճոտար Արեւելքից Յիսուսին երկրպագութեան եկած մոգերի զօրքիցն էին. այդ զինուորները մնացին քաղաքում (Երուսաղէմում) արքունի ծառայութեան մէջ, երդում տալով մինը միւսին, որ ամէն մի աւար կը բաժանեն. Յիսուս հաշտեցրեց նոցա։

Փրկչի Մանկութեան Պատմութեան հայ աղբիւրը ըստ Յուսիկ վարդապետի ձեռագրին վերջանում է Յիսուսի հետեւեալ կարճ խօսակցութեամբ Խորտար եւ Ճոտար զինուորների հետ։

“Ասէ Յիսուս զի՞նչ կամիք առնել ասացէք զճշմարիտն. [ասեն.] որպէս կամք քո հրամայեն. զի այս աւր յայտնի դատպւոր երեւեցար ի միջի մեր զի տեսաք զքեզ. շիջաւ բարկութիւն մեր եւ սատու-

ծոյ սէրն եկն ՝ի վերայ մեր. եւ ի գալ քո առ մեզ ուրախացան սիրտ[ք] մեր։ Ասէ Յիսուս եթէ կամիք զմ̃հութիւն աստուծոյ ընկալցուք (-ջիք) ի սիրտս ձեր. եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս ամէն։„

Կարճ ստանաւոր աղբիւր, որը ցոյց է տալիս, որ հեղինակը ծանօթ էր Յիսուսի Մանկութեան հէնց այդ իսկ խմբագրութեան հետ, գտնում ենք մենք հայ բանաստեղծ Յովասափ Սեբաստացու մօտ (ԺԶ դար)։ Նորա Հին եւ Նոր Կտակարանի չափաւոր մեկնութեան մէջ (ձեռգրը յօժարաբար յանձնուած ինձ բժիշկ Թ. Զաքարեանից, դ 2b — 9a թ.) 38 գլխի մէջ Մարիամի ծննդեան եւ Աւետման մասին եւ 39ի մէջ Յիսուսի Քրիստոսի Անճառելի Ծննդեան մասին կան մի քանի անվաւերական նշաններ, ի մէջի այլոց յիշատակութիւն յանդիմանութեան ջրի մասին, բայց դորա փոխանակ նորան հետեւող գլուխները ներկայացնում են, աննշան փոփոխութեամբ, Յիսուսի Մանկութեան մեր խմբագրութեան համապատասխան տեղի բովանդակութիւնը, բայց բովանդակութիւնը կրճատուած է. օրինակի համար յառաջ կը բերեմ ներկարարի հետ պատահած դէպքը։

“Գնացեալ Տապարիայ քաղաքըն մըտին.
Անդ այր մի Խորայէլ անուն կոչէին.
Ետուն զՅիսուս յարւեստ ներկարութին.
Եւ նայ տարեալ եցոյց ըզգործըն ներկին.
Ասէ. որդեակ, կացիր դու յայս մի տեղին.
Եւ ինքըն գընացեալ բերել կերակրին.
Եւ Յիսուս ժողովեաց զամէն կըտաւին
Եւ եդ ի մի կարաս որ սեաւ ներկ էին։
Զի լինելոց էր սեաւ կապոյտ եւ դեղին.
Ոմըն կանաչ կարմիր որդան պիտէին.
Եկեալ վարպետն ետես ի սեւ կարասին.
Բարկացաւ եւ Յիսուս փախեաւ ի նըմին։
Եւ նա էառ զկոփիչն ընկէց հետ նորին.

Նոյն ժամն արմատացեալ պըտղով ի տեղին
Եւ յիսուս փախուցեալ ի վերա ծովին
Երթայր անթաց ոտիւք որպէս ցամաքին։
Յայն ժամ զահի հարեալ ընդ հրաշըս բանին
Եմուտ եհան զկըտաւսն ի միջոյ կարսին,
Որպէս եւ տեարք նոցա յոր գուն ուզէին՝
Սեւ եւ կապոյտ, կանաչ, կարմիր եւ դեղին։
Մինն ասէ. կըտաւոյս իմ ներկ ոչ պիտին.
Եհան զնորա սպիտակ որպէս զառաջին.
Եւ որք ըզնայ տեսին կամ լըսէին,
Զաստուած աւրհնաբանեալ փառաւորէին։„

## ԺԱ.

Աստուածածնի Տեսիլը հայ գրականութեան մէջ, որքան յայտնի է ինձ, կայ երկու խմբագրութեամբ. տարածուածը՝ որ կցուած է յունական Ամենասուրբ կուսի Յայտնութեանը[1] եւ որից ես գտել իմ երեք օրինակ[2], եւ համառօտը կամ դուցէ կրճատուածն[3], որի բովանդակութիւնն ես յառաջ եմ բերում ստորեւ, քաղուածով եւ մի քանի տեղերի բառացի թարգմանութեամբ։

“Տեսիլ սուրբ կուսին Մարիամու աստուածածնին զոր գրեաց սուրբ առաքեալն եւ աւետարանիչն”

[1] Tischendorf, Apocalypses Apocryphae. Lipsiae, pp. XXVII—XXX.

[2] Էջմ. Թիւ՝ 1636, 1637 եւ 1638 ձեռագրեր (տես Ցուցակը). առաջին երկուսի մէջ Տեսիլը ունի այս վերնագիրը “Տեսիլ սուրբ Աստուածածնի, որ Սուրբ կոյսը տեսաւ դժոխքի վերաբերմամբ„. վերջինի մէջ — “Սուրբ Աստուածածնի հարցմունքները եւ հրեշտակի պատասխանները.„ իսկ Տեսլեան սկիզբը բոլոր երեք ձեռագրերում միօրինակ է. “Մտածեց Ամենասուրբ Մարիամ Աստուածածինը գնալ Էլէօնի սարը, կանգնել աղօթքի„ եւայլն։ Շատ ժամանակ չէ, որ կարդալով Աս. Թանգարանի Msc. Arm. թիւ 3, ես գտայ քարոզների մէջ այս իսկ Աստուածածնի Տեսիլը եւ Ս. Գրիգորի Տեսիլը։ Յարմար դէպքում կ'աշխատեմ աւելի մանրամասն տեղեկութիւն տալ այս Տեսիլների մասին ըստ Աս. Թանգ. ձեռգրին։

[3] Էջմ. ձեռգր ԺԶ դարու՝ թիւ 1631, 85b — 90a. (Տես Ցուցակը։)

քրիստոսի Յովհաննէս. զի նա սպասաւորէր սրբոյն կուսին մինչեւ փոխեցաւ յաստեացս:

"Սուրբ կոյսն Մարիամ Մայր բանին աստուծոյ. որ հանապազ ի բարեխաւսութիւն կայ առաջի աստուածութեան վասն ամենայն հաւատացելոց քրիստոսի. յորժամ փոխիլ կամէր յաշխարհէս եւ երթալ յանտրտում ուրախութիւնսն. զմտաւ էած՝ վասն հոգւոց արդարոց եւ մեղաւորաց՝ թէ զի՞նչ լինին եւ կամ մեղաւորաց հոգիքն որպէս տանջին՝ եւ արդարոցն հոգիքն յո՞րում տեղոջ զուարճեալ հանգչին:"

Աստուածածինը աղաչում է Տիրոջը հրաման տալ իրեն նայելու մեղաւորների տանջանքների տեղերը, եւ նորան՝ իբրեւ առաջնորդողներ՝ յայտնուում են Գաբրիէլ եւ Միքայէլ հրեշտակապետները:

"Բացան սանդարամետք անդնդոց եւ վառեցաւ խաւարն եւ մութն որ կայր ի վերայ մեղաւորացն: Եւ ետես ամենասուրբ կոյսն զի կային ի միում տեղւոջ բազմութիւն արանց եւ կանանց որ հառաչէին եւ կոծէին ի մէջ բոցոյն: Ասէ սուրբ աստուածածինն՝ ո՞վ են այնոքիկ որ այնպէս տանջին եւ կամ զի՞նչ մեղաց են պարտականք: Ասէ հրեշտակապետն [Գաբրիէլ]՝ դոքայ են որ ոչ հաւատացին ի հայր եւ յորդի եւ ի հոգի սուրբ. վասն այնորիկ աններելի է տանջանք նոցա: Եւ հայեցեալ յայլում տեղւոջ ետես խաւար սոսկալի եւ ի մէջ խաւարին երեւէին արք եւ կանայք եւ ձայնք նոցա ելանէր ողորմագոյն քան զամենայն ողբս՝ եւ ի սաստիկ խաւարէն սեւացեալ էին նոքա եւ աղաղակէին վայ ի վերայ վայի: Ասէ ամենասուրբ կոյսն. ո՞վ են նոքա որ խաւարեալ են եւ կամ զի՞նչ դառնագոյն եւ չար գործոց են մեղապարտք: Ասէ հրեշտակն. Ո՞վ սըրբուհի մայր եւ կոյս, անհնարին է նոցա տեսանել զլոյսն՝ այլ աղջամաղջին խաւարաւ ծածկին մինչեւ ի գալուստն տեառն. յորժամ որդին քո յայտնեալ

որպէս զարեգակն յերկնից ծագէ։ Եւ հայեցաւ սատուածածինն յերկինս՝ եւ գոչեաց հառաչմամբ եւ ասէ. Տէր իմ միածին աստուած բան հայր՝ որ ստեամբք իմովք դիեցուցի՝ լուր աղաչանաց աղախնոյ քո եւ անուամբ զաւրութեան քո վերացի խաւարն եւ տեսից զպատժեալսն։ Եւ առ ժամայն վերացաւ խաւարն եւ բացան ամենայն տեղիք տանջանացն եւ երեւեցան անթիւ բազմութիւնք մարդկան եւ լալումն եւ ողբումն գայր ի նոցանէ սաստիկ յոյժ։ Յայնժամ սրբուհի աստուածածինն բազում արտասուս եհեղ. յորժամ ետես զնոսա . . ։ „

Այս մեղաւորները դատապարտուած են եղել նորա համար, որ չեն հաւատացել Փրկչին։

"Ասէ սուրբ աստուածածինն ընդ հրեշտակն. եկայք երթիցուք յայս տեղի տանջանաց՝ եւ իբրեւ գնացին, տեսին գետ մի հրեղէն եւ յորձանք նորա յորդահոս. եւ կային ի նմա բազմութիւնք արանց եւ կանանց՝ ոմանք թաղեալք մինչեւ ի գագաթունս՝ եւ ոմանք մինչեւ ի պարանոցսն եւ ոմանք բնաւ ոչ երեւէին։ Ասաց սուրբ աստուածածինն. ո՞վ են այդուքիկ կամ զի՞նչ գործք չարեաց նոցա որ յայս մեծ եւ յահագին տանջանս չարչարին։ Ասէ հրեշտակն տեառն. որ մինչեւ ի գագաթունս թաղեալ կան. այնոքիկ են որ չարչարեցին զծնօղս իւրեանց եւ անարգեցին եւ արհամարհեցին եւ բարկացուցին սրտմտութեամբ եւ ժառանգեցին զանէծս նոցա. եւ որ մինչեւ ի պարանոցսն թաղեալ կան ի մէջ հրոյն՝ նոքա են որ ընդ որդեգիրս իւրեանց պոռնկեցան եւ ը մայր նոցա մեղանչեցին եւ զբարձրեալն աստուած բարկացուցին եւ վասն այնորիկ ընկեցան ի մեծագոյն կորուստն. եւ որ ամենայն մարմնովն թաղեալ կան ի մէջ բոցոյն՝ նոքա են կանայք չարք որ շնան եւ պոռնկին եւ յղանան եւ դեղ առեալ սպանանեն զմանկունսն. եւ թէ լինի որ գայ ի ծնունդ՝ խեղդամահ առնեն եւ սպանանեն. եւ որ մինչեւ ի մէջսն են ի տանջանս՝ նոքայ են որ եր-

դուան սուտ ի խաչ եւ յեկեղեցի եւ ի խաչելեալն աստուած։ Եւ ետես յայլ տեղի մարդիկ՝ զի կախեալ կային զոտից իւրեանց՝ եւ հրեղէն որդունք[1] լափէին զմարմինս նոցա։ Ասէ աստուածածինն. զի՞նչ մեղս գործեալ են նոքա։ Ասէ հրեշտակն՝ նոքա են մեծատունքն որ զրկեցին զաղքատն, խորեցին ի վարձուց եւ կողոպտեցին զանմեղս եւ եդին ի բանդի. առին կաշառ եւ թիւրեցին զդատաստան արդարոցն. հանին զօղս եւ աւազակս յանցս ճանապարհաց եւ սպանութիւն գործեցին եւ ժողովեցին ոսկի եւ արծաթ բազում ի կորուստ անձանց իւրեանց։ Եւ հայեցեալ յայլ տեղիս ամենասուրբ կոյսն՝ եւ տեսանէ կանայք զի կախեալ կային գլխիվայր եւ բանային զբերանս իւրեանց եւ թափէին զլեզուս իւրեանց թզաչափ եւ ելանէր բոց ծիրանի ընդ բերանս իւրեանց՝ ի նմանութիւն իժ[ից] եւ օձից, մտանէին եւ ելանէին։ Ասէ սուրբ աստուածածինն. ո՞վ են այնոքիկ որ այնպէս դառն տանջանաւք չարչարին։ Ասէ հրեշտակն. նոքա են ականջադիր կանայքն որ պատերազմ եւ կռիւ եւ մարդասպանութիւն գործել տային վասն ականջադրութեան իւրեանց՝ վասն որոյ յիրաւի են տանջանքն այն նոցա։ Ասէ սուրբ կոյսն՝ լաւագոյն էր մեղաւորաց թէ բնաւ չէին լեալ յաշխարհի եւ ոչ ունէին ցարութիւն

---

[1] Վարդան Այկեկցու աշխատութիւնների թւում գտնւում է ի միջի այլոց մի յօդուած "Վասն անքուն որդանց„ այսինքն հրեղէն որդանց ("եւ անքուն զնոսա ասացին՝ քանզի հրեղէնք են եւ ոչ ունին մարմինք զի ննջեսցեն։„) Ի՛վկայութիւն նոցա ճմարիտ գոյութեան յառաջ բերելով Եսայի մարգարէի եւ Գրիգոր լուսաւորչի թոռան, Ներսէս Հայրապետի խօսքերը Վարդան կարեկցութեամբ յիշում է նոցա գոյութեանը չհաւատացողներին. "Ոչ գիտեն ոմարմելիքն թէ հրեղէնք վիշապք են՝ ահաւորք եւ սոսկալիք որ ծնանին մեղաւք մեր զոր գործեմք՝ ի գեհենական ծովն հրեղէն որ կայ ի ներքոյ հիմանց աշխարհի՝ որ լափեալ կիզէ եւն։„ Այս իսկ յօդուածում խօսւում է աշխարհիս վախճանի մասին եօթը դար անցնելուց յետոյ այսինքն աշխարհի ստեղծմանէ եօթը հազար տարի յետոյ։ (Ձռ.գր. Լազարեան ճեմարանի, թիւ 1172, 210b—222a թ.)

եւ ակն այս դժուարին տանջանացս եւ գնացին ըստ գործոց իւրեանց. եւ երանի է արդարոց եւ բարեգործաց. զի արժանի եղեն նոքա արքայութեան երկնից. բայց վայ մեղաւորաց զի ընկալան նոքա զյաւիտենից կորուստն: Արդ՝ ով եղբարք իմ սիրելիք լուայք զայս ամենայն մի ըստ միոջէ եթէ որպէս տանջանք եւ կորուստ կայ առաջի մեր անողորմելի. աղաչեմ զձեզ մի ձանձրանայք զբարիս գործել զի կարող լինիցիք հասանել խոստացելոց բարեացն եւ անթառամ պսակաց ի քրիստոս յիսուս ի տէր մեր. որում փառք յաւիտեանս ամէն:„

## ԺԲ.

ԺԶ. դարու նոյն ձեռագրից, որ է 1539 թուականի՝ (Էջմ. Թիւ 1631) ես դուրս բերի ստորեւ առաջ բերուած Պօղոսի Տեսլեան հատուածը: Ըստ բնաւորութեան համասեռ ԺԷ դարու ձեռագրերի համապատասխան տեղերում, որոնց նկարագրութիւնները կը զետեղուին Ցուցակի մէջ (Էջմ. Թիւք 1636, 1637 եւ 1638), մենք չենք գտնում այդ Տեսիլը, այլ գտնում ենք "Թուղթ Տեառն մերոյ Յ̄սի Քրիստոսի, որ առաքուած էր Պետրոս եւ Պօղոս առաքեալների[1] ("Պետրոս եւ Պօղոս առաքեալների„ 1637 թիւն է աւելացնում) սուրբ տաճարը:„ Իսկ մեր յիշատակարանի վերնագիրն է "Տեսիլ Պաւղոսի առաքելոյն. խաւսելն ընդ հրեշտակին„: Մեր դուրս բերածը պարունակում է նորա մասը, որ Առաքեալը տեսել է դժոխքում. նա կազմում է Տեսլեան երկրորդ կէսը մի քանի բաց թողնուած տեղերով, այն

---

[1] Բնագիրը տես Ցուցակում: Դատելով յառաջաբան եւ վերջաբան խօսքերից, որոնք ես դուրս եմ բերել այս թըղթից, մենք նորան ունինք թերեւս մի յօդուածում — Թուղթ Յարութեան մասին — վերյիշեալ քարոզների ձեռագիր հաւաքածուի մէջ, (Ա. Թանգ. Arm. N. 3.) որի մասին զեկուցանելու ժամանակ մենք միջոց կ'ունենանք աւելի ընդարձակ տեղեկութիւններ տալ Պօղոսի թղթի այդ հայ թարգմանութեան մասին:

է 99a—112b թ., որը՝ բռնելով ձեռագրում ընդ-
ամէնը 96b—113a թ., սկսւում է այս խօսքերով։

"Ցետի զբազուման ի մէջ թանձրամած խաւարի. յորդոց հանի լացի եւ ասացի առ բարձրեալն. որովհետեւ տանջին. չէր բնաւ ստեղծեալ եիր զորդիս մարդկան։ Պատասխանի ետ հրեշտակն եւ ասէ. է՞ր լաս. միթէ դու ողորմած եւս քան զաստուած։ Հայեցայ եւ տեսի ալեւոր մի. եւ չորս հրեշտակ ածէին զնա ի գետն հրեղէն. եւ գետն մինչեւ ի սիրտն հասանէր. եւ եկն հրեշտակն եւ երկաթանի մահան ի ձեռին իւրում. եւ հանէր զաղիսն ընդ բերանն նորա։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. երիցանին են՝ որ ոչ պաշտէին զպաշտաւն աստուծոյ. այլ յորժամ յագէր ուտելոյ եւ ըմպելոյ՝ շնայր եւ մատուցանէր պատարագ աստուծոյ։ Նոյնպէս եւ այլոն տանջանէքն այնպէս։ Եւ ասեմ. ո՞վ են այսոքիկ. եւ ասէ. եպիսկոպոսքն են որ ոչ առնեն տեսչութիւն ըստ կամացն աստուծոյ եւ զփառս անձին իւրոյ խնդրեաց, ոչ եկաց որբութեամբ եւ ոչ գնայր ի շնորհն աստուծոյ՝ որ տուեալ էր նմա եւ ոչ արար իրաւունս որբոյն եւ այրոյն. վասն այնորիկ յաւիտեան տանջին։ Միւս այլ եւս տեսանէի զայր մի. որ ածեալ էր հրեշտակն ի հուրն ահագին եւ սփռեալունէին զձեռն թագաւորեալ (թաթաւեալ՞) արեամբ։ Եւ ասեմ. ո՞վ է սա տէր։ Եւ ասէ սարկաւագն է որ կայր սպասաւոր քահանային եւ առնայր հաղորդ եւ շնայր եւ բանի ոչ գործեաց։ Եւ տեսանէի զայլ ոք զի արկանէին ի հուր մինչեւ ի ծունկն. եւ եկն հրեշտակն եւ ածել[ե]աւ հարթէր զշրթունս եւ զլեզու նորա։ Եւ ասեմ. տէր ո՞վ է սա։ Եւ ասէ գրակարդացն եւ վարդապետն որ ասեն զպատուիրանն ժողովրդեանն եւ ինքեանք ոչ առնեն. այլ կան անառակութեամբ. վասն այնորիկ տանջին։ Դարձեալ տեսի գուբս լի նշէջ հրով եւ ազգի ազգի տանջանարանս. զոմանս անշէջ հուրն եւ զոմն լի ցրտագինս սառնամանաւ՝ զոմն լի խաւ-

պրաւ (խաւարաւ) եւ զումն լի հրացայթ շանթիւք՝ զումն լի ծըծմով եւ զումն լի հրեղէն անքուն որդամբք՝ եւ արկեալ էր անդ այրս եւ կանայս բազումս անհամարս։ Իբրեւ տեսի լալով ասացի ցհրեշտակն. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. Նոքայ են որ արհամարհեցին զպատուիրանն աստուծոյ՝ եւ ձայնի քահանայիցն ոչ լուեցին. այլ հեռացան կամաւք իւրեանց եւ ելին յաստուծոյ պատուիրանացն։ Եւ տեսի զումն որ տուկոս խնդրէին ի նմանէ եւ ասեմ. ո՞վ են սոքա։ Եւ ասէ հրեշտակն. սոքա են որ վաշխ առնուն եւ տան։ Եւ տեսի զոմանս ի ցրտագին սառնամանիքն եւ կախեալ զլեզուէ եւ չար հրեշտակք որ տանջէին զնոսա։ Հարցի եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. երդմնահարքն են. որ ուրացան զաստուած[1] յերդնուլն իւրեանց. վասն այնորիկ տանջին։ Եւ տեսի պարիսպ հուր եւ անդ արկեալ էր բազում այրս եւ կանայս. եւ գազանք ծամէին զլեզու նոցա. եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ հրեշտակն. բամբասողքն են։ Հայեցայ եւ տեսի այրս եւ կանայս զի արկեալ էր ի գուբ խաւարի. եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ ատեցին զպահս եւ զաղաւթս։ Եւ տեսի զոմանս արկեալ ի խաւարուտ տեղոջ եւ կապեալ զոտս եւ զձեռս նոցա. եւ այնպէս տանջէին զնոսա։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են անողորմքն. որ աղքատաց ոչ առնեն ողորմութիւն . . .

---

[1] Երդմամբ Աստծուն ուրանալը լինում էր զանազան տեսակ, ինչպէս այդ տեսնում է Վարդան Այգեկցու եւ հետեւեալ տեղից, Զարտաքանութեան մասին թղթում. (Էջմ. Թիւ 1767, բ 3a թ.) "Որ սուտ վկայէ. ընդ պոռնիկն դատելոց է եւ որ երդնու. ուրացութեամբ ընկեր է մարդասպանին եւ ուրացութեամբ երդմունք այսոքիկ են. որ ասէ թէ ապիզար է ի հաւատոյն կամ ասէ թէ զշուն է պաշտել(եալ) կամ զսուտ [ասէ] կամ ծիր հանէ յանուն դիւաց կամ ոսկր առնէ (առնու ?) եւ երդնուի կամ ջրով լոյս անցուցանէ։ Իսկ ի խաչ եւ յեկ[եղեցի] թեթեւ է քան զայնոսիկ. բայց քրիստոս յոյժ մեր բնաւ հրաժարեցոյց յերդմանէ մինչեւ ի մազ մի գլխոյ,, եւն։ Այստեղ ցոյց տրուած սնապաշտական սովորութիւնները ծրով եւ ոսկրով նոյնպէս լուսով ու ջրով ինձ անյայտ են։

"Եւ տեսի զտարտարոսն ներքինս. եւ ի նմա էին այրս եւ կանայս բազումս. եւ վիշապք ծծէին զակամնչս նոցա։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ յաւուր կիրակէի հեշտացան յանկողինս իւրեանց եւ ոչ լուան զձայն սուրբ աւետարանին՝ վասն այնորիկ տանջին։ Հայեցայ ի տարտարոսն այն եւ տեսի ալեւորք եւ գոյն նոցա ի գոյն արեան։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են անդարձ ծերքն որ ոչ զղջացան եւ ոչ խոստովանեցան զմեղս իւրեանց այլ անդարձ եւ անխոստովանութեամբ մեռան. վասն այնորիկ տանջին։ Եւ տեսի այլ գուբ հրոյ անշէջ եւ արկեալ էին անդ [այրս եւ] կանայս բազումս. եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ կին ունին եւ շնան. եւ կանայքն ունին այրս եւ շնան եւ կամ առեալ այր զկին[ն] եւ կին զայր[ն] իւր եւ ոչ յիշեցին զքրիստոս որ վասն նոցա խաչեցաւ. վասն այնորիկ տանջին ի հուրն յաւիտենից։ Եւ տեսի այրս եւ կանայս ի տեղւոջ սառնին՝ եւ հատեալ զոտս եւ զձեռս նոցա. եւ որդունք մեծամեծք ուտէին զնոսա եւ էին որդունքն կանգուն երկու. իբրեւ տեսի լացի եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ զորբս եւ զայրիս զրկեն ի զուր եւ ի տունս իւրեանց ժողովեն. վասն այնորիկ տանջին հրով։ Եւ տեսանէի ի պապակի եւ չտային ըմպել նոցա ջուր եւ կամ կերակուր։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ յաւուր կիրակէի ուտէին զկերակուր իւրեանց՝ եւ ոչ տային աղքատաց. վասն այնորիկ տանջին։ Եւ տեսի այլ տեղի. եւ անդ էին արք եւ կանայք բազումք. եւ գոյնք նոցա որպէս զարեան՝ եւ արկեալ էր անդ ի խորխորատ՝ եւ նա լի էր ծծմբով՝ եւ ի վերայ կարկուտ սաստիկ եւ օդ սառնամանուտ խաւարի։ Հարցի եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են որ գործ անաւրէնութեան գործեցին. վասն այնորիկ անողորմ տանջին։ Տեսի անդ եւ այլ տեղի՝ եւ անդ էին արք եւ կանայք՝ եւ թե-

Թեւ էր տանջանք նոցա՝ ունէին հանդերձ սպիտակ եւ աչք նոցա կոյր եւ արկեալ զնոսա [ի] խորխորատ խաւարի։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. սոքա են հեթանոսք որ գործէին գործս բարիս եւ զխաչեալն աստուած ոչ ճանաչէին. վասն այնորիկ կան ի տանջանս։ Հայեցայ եւ տեսի արս եւ կանայս ի վերայ գազանաց՝ եւ էին իբրեւ զվիշապ եւ ուտէին զնոսա. եւ հրեշտակքն որ կային ի վերայ աւելոյր ի տանջանս եւ ասէր. իմացարուք թէ զուցէ դատաստան արդար աստուծոյ։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա տէր։ Եւ ասէ. կանայք են որ ապականեն զատեղծուածս սուրբ պարտելով (պատրելով) զմարդիկ ի կորուստ եւ գործել տան զչարիս եւ յղանան եւ սպանանեն զմանկունս յորովայն իւրեանց եւ արքն այնոքիկ են ընդ նոսա. եւ մանկունքն կային առաջի աստուծոյ եւ ասէին՝ վրէժ առ ի ծնողաց մերոց՝ զի ետուն զմեզ կերակուր շանց եւ գազանաց։ Եւ հրեշտակն որ շրջեցուցանէր զիս յամենայն տանջանս մեղաւորաց՝ եւ տեսանէի զամենայն որ անդ կայր։ Յետ այսորիկ տեսանէի այլ տանջանս. էր անիւ մի իբրեւ զբոց հրոյ՝ եւ ածէր հրեշտակն այրս եւ կանայս, զայրս ի լեզուացն կախեալ եւ զկանայս ի հերացն՝ եւ պապակէին սաստիկ ի հրոյն եւ գայր ձայն ի յանուոյ անտի որ ասէին միաբան անձինք նոցա՝ ողորմեաց մեզ տէր. զի այժմ ծանեաք զժամանակ ապաշխարութեան։ Իբրեւ տեսի լացի եւ ասացի՝ լաւ էր մեղաւորաց թէ չէին ծնեալ յերկրի։ Եւ ասէ հրեշտակն՝ եկ զկնի իմ եւ ցուցից քեզ մեծամեծ տանջանս՝ եւ առ զիս յարեւելից կուսէ ամենայն տանջանացն եւ կացոյց զիս ի վերայ գբի մի եւ գուբն կնքեալ էր եւթնպատիկ։ Ասէ հրեշտակն որ մերձ կայր առ իս ցհրեշտակն որ կայր ի վերայ գբին. բաց զբերան գբին զի տեսանէ պղայ Պաւղոս սիրելին աստուծոյ քան զի հրաման տուեալ է դմայ զամենայն տանջանս տեսանել։ Եւ հրեշտակն ի տեղւոյն ի բաց եկաց եւ ասէ. ոչ կարես

ժուժել հոտոյն։ Իբրեւ եբաց զգուբն դժոխոց՝ ել հոտն դառն եւ դժընդակ քան զամենայն տանջանացն։ Հայեցայ ի գուբն այն. եւ էին գնդակ գնդակ ի վերայ. եւ տեսի ի ներքս ի գուբն այլ գուբ ազգի ազգի. եւ արկեալ էին անդ այրս եւ կանայս՝ շուրջանակի տանջանս։ Եւ ասէ հրեշտակն որ խաւսեցաւ ցիս. ի միտ առ եւ տես. զի յորժամ ընկենուն զոք աստ. այնուհետեւ դնեն զմատանին ի վերայ նորա եւ ոչ ելանեն յաւիտեան։ Եւ ասեմ. ո՞վ են սոքա որ արկեալ են ի գուբս այս։ Եւ ետ պատասխանի հրեշտակն եւ ասէ. սոքա են որ ոչ հաւատացին զՔ̃ մարմնով եկեալ յաշխարհս եւ աստ տանջին յաւիտեան (112b)։„

## ԺԳ.

Պօղոսի Տեսիլքից յետոյ ի դէպ կը լինի ներկայացնել Պետրոս առաքեալի Երազի բնագիրն ու թարգմանութիւնը Պօղոս առաքեալի մեկնութեան հետ միասին, շարադասուած կենդանի ոտանաւոր ձեւով, մասամբ ժողովրդական լեզուի ոճով. ես նորան առել եմ վերոյիշեալ (տես էջ 2—5) առժամանակ իմ մօտ գտնուած վերջին դարերի (ԺԳ—ԺԷ) հայ բանաստեղծների բանաստեղծութեանց ձեռագիր հաւաքածուից։ Բանաստեղծութեան հեղինակի անունը ինձ անյայտ է։

“Պետրոս յերազ է տեսեր.
Ելեալ պատմէր Պաւղոսին։ Գ̅ կրկնեա։
Փոքրիկ այգի մի տեսայ.
Փոքրիկ հընձան մի վերայ.
Փոքրիկ հընձանին վերայ
Բարակ առւակ մի տեսայ.
Ցայն բարակ առւին վերայ
Նոր բարունակ մի տեսայ.
Նոր բարունակին վերայ
Ոսկի ողկոյզ մի տեսայ.

Ոսկի ոլկուզին վերայ
Խայտ աղաւնի մի տեսայ։ Գ̅ կրկնեա։
Պատասխանեալ Պաւղոսին.
Պետրոս, երազդ ի բարին.
Հրեշտակային է տեսիլդ.
Զփոքրիկ այգին որ տեսար՝
Յերուսաղէմ քաղաքն է։
Զփոքրիկ հընձանն որ տեսար՝
Սողոմոնի տաճարն է.
Զբարակ առուն որ տեսար՝
Գետ Յորդանան աղբիւրն է.
Զնոր բարունակ որ տեսար՝
Աստուածածին սուրբ կոյսն է.
Զոսկի ոլկոյզն որ տեսար՝
Իւր միածին որդին է։
Զխայտ աղաւնին որ տեսար՝
Մխիթարիչ հոգին է։
Պետրոս, երազդ ի բարին.
Հրեշտակային քոյ տեսիլդ։»

## ԺԳ.

Աստուածածնի եւ Պօղոս առաքեալի Տեսիլքների հետ ձեռագրերում գտնվում է մի Պատմութիւն, թէ ինչպէս Հայոց Լուսաւորիչ Սուրբ Գրիգորը հարց ու փորձ էր անում Աստուծոյ սուրհանդակին այսինքն հրեշտակին, երբ նա դեռ Մանեայ այրումն էր գտնվում[1], կամ ըստ այլ ձեռագրաց[2], Գրիգոր Լուսաւորչի Հարցմունքները եւ հրեշտակի պատասխանները։ Այս մի պատմութիւն է, թէ ինչպէս մի անգամ Ս. Գրիգորը անապատում եղած

[1] Պատմութիւն սրբոյն Գրիգորի եւ այլն. ձռգր. Էջմ. Թիւ 1631, 90a—96b։

[2] Ձռգր Էջմ. Թիւ 1636 (Հարցմունք սրբոյն Գրիգորի լուսաւորչի եւ պատասխանի հրեշտակին վասն որդւոց (ոգւոյ) մարդկան. Թղ. 125b—144a), եւ 1637, Թղ. 20a—26b եւ 1638, Թղ. 1a—23b։

ժամանակամիջոցին սկսեց մտածել մեռած հոգիների վիճակի մասին եւ, քառասուն օր եւ գիշեր պահք պահելուց յետոյ՝ այնպէս՝ որ “քառասուն օր եւ քառասուն գիշեր ոչ հաց էր ուտում եւ ոչ ջուր էր խմում„, սուրբը խնդրեց Աստծուն, որ նա ուղարկէ մի հրեշտակ, որը ցոյց տար իրեն արդարների եւ մեղաւորների տեղերը։ Գրիգոր Լուսաւորչի այս Տեսլեան մէջ իմ ուշադրութիւնը գրաւեց հոգու եւ մարմնի խօսակցութիւնը, որն ես զետեղում եմ ստորեւ (ըստ Էջմ. ձռգր. թիւ 1631, 90a—92b) յառաջ բերելով բնագիրն ու թարգմանութիւնը հանդերձ մի քանի նոյն կամ համանման նիւթի վրայ գրուած հայ բանաստեղծութիւններով, որոնք, որքան ինձ յայտնի է, առաջին անգամն են տպագրւում, լրացնել Վէճերի գրականութեան յայտնի շրջանը։

Գրիգորի Տեսիլը իւր բնութեամբ համանման է սուրբ Մակարի Տեսլեանը եւ վերջինիս նմանող Պօղոս առաքեալի Տեսիլքից դուրս բերած հատուածին. (Տես Ѳ. Батюшковъ, Сказанія о спорѣ души съ тѣломъ, Журн. Мин. Нар. Просвѣщ. 1890—91)։

Հոս հեղինակի այդ Տեսիլը ազգային սուրբին վերագրելը հեշտութեամբ կարող էր լինել, ինկատի առնելով այն հանգամանքը, որ Հայոց Լուսաւորիչը, ըստ վարուց, ճիշտ որ տեսել էր Տեսիլք, թէպէտ եւ այլ բովանդակութեամբ (Ագաթանգեղոս, Հայ բնագրի ՃԲ. Թիֆլիզ 1882, էջ 427 եւ հետեւ.)։ Էջմիածնի ձեռագրերի ցուցակը, ուր զետեղուած է այս յիշատակարանը, ԺԶ դարից չէ անցնում։ Յիշատակարանը, ինչպէս երեւում է, Հայոց մէջ ժողովրդականութիւն էր վայելում.[1] քարոզների մի ձեռագիր ժողովածուի մէջ (ձեռ. 1620 թ. Ասիական Մուզ. Թիւ 3) ամենածանր մեղքի վրայ խօսուած մի քարոզի մէջ այս տեսիլից

[1] Նա կայ եւ վրացերէն թարգմանութեամբ (Տես Վրաց “Իվերիա„ լրագիրը 1891 Թիւ 118.)։

վկայութիւններն են յառաջ բերվում: Ձեռագրի մէջ կարդում ենք. (7, 2a)

"Եթէ ասէ մարդ թէ փոքր մեղք ունիմ. ի՞նչ խոստովանիմ. այլ այն է մեծ առաջի աստուծոյ. որպէս Գրիգոր Լուսաւորիչն հարցուց զհրեշտակն թէ որ մեղքն մեծ է առաջի աստուծոյ. եւ հրեշտակն ասէ. զոր մարդ փոքր համարի եւ ոչ խոստովանի. այն է մեծ առաջի աստուծոյ. եւ զմարդն ամաւթով առնէ" եւն:

Գրիգոր Լուսաւորչի այս հարցմունքը հրեշտակի բացատրութեամբ հանգերձ գտնում ենք մեր Տեսլեան մէջ, որից ես այստեղ, ինչպէս վերեւումն է ասուած, յառաջ եմ բերում միայն հատուածը, որ պարունակում է մեղաւոր հոգու վէճը մարմնի հետ: Ս. Գրիգորի հարցին, թէ ի՞նչ են անում հրեշտակները մեղաւորի հոգին, երբ առնում են նրան, հրեշտակը պատասխանում է. "Երբ որ մենք պատրաստուում ենք առնելու մեղաւորի հոգին, հոգին մարմնի հետ վէճի է բռնվում, եւ այստեղ իսկ հրեշտակը փոխաբերում է ամբողջապէս հետեւեալ խօսակցութիւնը կամ հոգու եւ մարմնի վէճը:

"Դատախազէ հոգին ընդ մարմինն եւ ասէ. զի՞նչ գործեցեր, ո՞վ մարմին. յաւիտենական հրոյն կերակուր արարեր զիս. այսպէս թուէր քեզ թէ յաւիտենական էիր յաշխարհի եւ ոչ մեռելոյ: Մարմինն առ հոգին խաւսի եւ ասէ. մի այդչափ մեծաբաներ եւ ինձ մեղադիր լինիս՝ զի յամենայն չարիս դու յառաջ յաւժարէիր եւ ցանկայիր խորհրդով եւ բանիւ՝ եւ ես գործով կատարէի. եւ յորժամ ցանկութեամբ բորբոքէի՝ ոչ արկանէիր զջուրն եւ շիջուցանէիր զհուրն յինէն: Ասէ հոգին. ես ցանկայի միայն՝ եւ դու զչար գործսն կատարէիր՝ յուտել, յըմպել, ի շնալ, ի պոռնկել, ի յագել, ի գողանալ, ի սպանանել. եւ ոչ յիշէիր զահեղ եւ զանաչառ դատաստանն աստուծոյ: Պատասխանի տայ մարմինն եւ ասէ. ինձ ընդէ՞ր մեղադիր լինիս՝

ես քո տաճար էի եւ բնակարան. որպէս փող ի ձեռն արուեստաւորի կամ որպէս երասանակ ձիոյ՝ զի ընդ որ կամեցի՝ ընդ այն ուղղեցէ: Ասէ հոգին. ես քեւ յաւժարէի յամենայն մեղս եւ ի չարիս: Ասէ մարմինն. եւ արդ դու մի պարծիր. զի պոռնկութիւն մարմնոյն է եւ շնութիւն եւ սպանութիւն՝ եւ նախանձ եւ սնապարծութիւն, սնափառութիւն, հպարտութիւն հոգւոյն: Ասէ հոգին. եթէ այդպէս իցէ, ապա վայ մեղաւորացս եւ եղկելեացս՝ արդ ի միասին գործեցաք զչարիս. ի միասին տանջելոց եմք ի հուրն անշէջ. զի տեղի ունէաք սերմանելոյ եւ ոչ սերմանեցաք զսերմն բարի. եւ աւուրք էին գործելոյ զբարի եւ ոչ գործեցաք: Արդ վայ մեզ զի անկաք յերանութենէ կենացն. տեսանէաք զի այլք գործէին զբարիս եւ մեք ծաղր առնէաք եւ ոչ գիտէաք թէ այդ առաջի կայր մեզ. գոչէին քահանայքն առաջի մեր եւ մեք ոչ լսէաք եւ ոչ եմուտ պատգամն աստուծոյ յականջս մեր: Յորժամ ասէին վասն գեհենոյն՝ մեզ իբրեւ երազ թուէր՝ անաւրէնեցաք եւ ոչ յիշեցաք զահեղ եւ զանաչառ՝ դատաստանն աստուծոյ. արդար են դատաստանքն աստուծոյ եւ ոչ գոյ ակնառութիւն առաջի նորա եւ հատուցանէ ըստ գործոց իւրաքանչիւրոյ: Յայն ժամ հեծելով եւ հառաչելով՝ ասէ հոգին ընդ մարմինն. արդ վայ ինձ. զի՞նչ լինիմ ես. զի սարսեալ եմ եւ դողամ ի գնալս իմում ի վեր եւ ոչ իշխեմ հայել ի հրեղէն զաւրութիւնսն՝ զի կոփելով եւ ձաղելով տանին զիս: Ասէ մարմինն. կորեայ. զի՞նչ լինիմ ես. զի որպէս ամուր եւ գեղեցիկ աշտարակ էի եւ փլայ՝ երկեաւ եւ զարհուրեցաւ սիրտ իմ եւ եղէ հաւասար գետնոյ. գնայուն էի եւ անշարժ եղէ. խաւսուն եւ իմաստուն յիմարեցայ. ապականեցաւ, պակասեցաւ պայծառ եւ գեղեցիկ գեղ վայելչութեան իմոյ. եղծաւ կառս ցանկալիս բազմաց. խաւարեցան աչք իմ՝ պայծառ եւ գեղեցիկ եւ լուսաւոր. սեղմեցան եւ խլացան

դրունք լսելեաց իմոց. հատաւ բարբառ ի բերանոյ. կորեաւ բանք ի շրթանց իմոց: Ասէ հոգին՝ ես զի՞նչ լինիմ. զի ի հրակերպից հրեշտակայն սարսեալ եմ. ի վեցթեւեան սերովբէից դողամ եւ ի դատաւորէն զահի հարեալ եմ եւ սարսիմ յահէ նորա: Ասէ մարմինն եւ ես զի՞նչ լինիմ զի յերկիր անկայ. մանրեցայ եւ ընկրկեցայ ի գուբ՝ եւ լինելոց եմ կերակուր որդանց: Ասէ հոգին՝ էջ լռեայ եւ հանգիր մինչեւ ի գալուստն դատաւորին քրիստոսի. մի թէ յազգէ մերմէ հանդիպի ի դպրութիւն կամ ի քահանայութիւն կամ ի գործս արդարութեան որ յիշեն զմեզ ի ձեռն եկեղեցւոյ՝ կամ ի պատարագ կամ յողորմութիւն. միթէ ողորմի աստուած եւ թողութիւն շնորհեսցէ յանցանաց մերոց:»

ԺԳ դարու բանաստեղծ Խաչատուր Կեչառուեցու բանաստեղծութիւնների մէջ մենք գտնում ենք մի քանի տուն[1], նոյնպէս նուիրուած հոգու եւ մարմնի վէճին:

«Հոգիս դատախազ լինի մարմնոյս[2]
Իեղուկ տայ սրտիս,
Թէ է՞ր կուտեցեր չարիս
Ցանցաւոր յայս սուտ յաշխարհիս:
Կամ է՞ր կորուսեր դու զիս
Եւ յանշէջ կրակ դրեր զիս.
Այն աւր որ հաշիւ լինի,
Դու այրիս ւանզերծ տանջեն զիս:
Մարմնոյս պատասխան այս
Որ ի տալ մտացս եւ հոգոյս.
Իզի[ս] ապտսաւոր է՞ր առնես.
Այդ սուտ զուր է իմ խոցերիս (խոցելո՞յս).
Ես ձի եւ դու տէր ձիոյս.
Ես ծառայ ւիշխան դու գերոյս.

---

[1] Էջմ. ձռգր. Թիւ 86, ժզ 6a—6b էջ: Համարատելը ինձ է պատկանում:

[2] Ձռգրում — զՀոգիս դատուխա[զ լ]ինիմ մարմնոյս

Կամելդ՝ քո. գործ՝ լինի ինձ.
Մեղ էր[1] գնես հողածնոյս։
Աշխարհս էր ի ծով նման.
Ջիս ի վայր տարաւ ւ յանդիման.
Կենցաղս էր ալեաց նման.
Ջիս ի մէջ էառ քան զընդան։»

Ես բաց թողի վերջին տունը. նորա մէջ խօսւում է գղջման (փոշիման) վերայ, որպէս կեանքի հետեւանքի մասին, որ նմանեցրած է մի ամառուան մէջ ծաղկած եւ թարշամած ծաղկին. վէճի շարժառիթին նա ոչինչ չի աւելացնում։

Մահուան ամենազօրութեան վրայ խօսում է բացադարձութեամբ ԺԵ դարու վերջի հայ մատենագիր Յովհաննէս Թուլկուրանցին ուղիղ Տաղ Թուլկարանցու[2] խորագրուած բանաստեղծութեան մէջ, ասելով թէ ինչպիսի սարսափ է տիրում իրեն ամէն անգամ մտաբերելով մահը, որը նորան թւում է «բոլոր թոյներից ամենադաժանը». բանաստեղծը շարունակում է։

«Սողոմոն յիշեաց ըզքեզ եւ ասաց. եղուկ վայ եմ ես.
Նախատեաց զիմաստութիւն. քան զանգէտ աղքատ
մեղայ ես.
Ընմեղք ի յաշխարհս եկի եւ մեղօք երթամ սեւերեսս։
Սողոմոն արքայ ասաց. մի ասեր թէ արքայ եմ ես.
Ունիմ շատ դրախտ, շատ գանձ, շատ դարպաս եւ
ոսկի ի ներս։
Ի զուր խռովեալ գանձես. ոչ գիտես թէ ում ժողովես.
Զաշխարհս ես ի գիրկս առեր, քեղ ի (քեզի) խոր
դժոխ կու փորես։
Է մահ թէ դու քէն ունիս ադամայ, յորդիս կու
հանես

---

[1] Ձագրում — մեղեր։
[2] Էջմ. ձռգրից Թիւ 86, ժղ 4a—4b էջ։

կամ մեղաց հարուած ես դու, ի մահու պտղէն
ծնեալ ես։

Մովսէս մարգարէն չասես ու ի Դաւթայ իսկի չամաչես։

ԶԱբրահամն հայր տանիս, զիսահակ ի հողն ածրուես

ԶՏրդատ աթոռոյն ձգես, զԿոստանդին ի յաչք
չբերես.

Թէ կանկել է հազար հեծել եւ ժողովք, իսկի չի
վախես։

Թէ հագել է վեց զրեհ, նետ նետես ի թափն
անցնես.

Առնես զնայ, ի բանդ ածես, դէմ դռան քար մի
դու ձգես։

Արծիւ ես, յերակ թռչիս, լայնայծիր զթեւդ տա-
րածես։

Զինչ աշխարհս հզաւր մանուկ ու ի թեւի ծ[ր]արս
ծրարես։

Հազար երանի նորա որ բարի գործով գտանես.

Հեղեղ ըղնայ է տարեր, ի մեղաց մէջն զով բունես։

Յովաննէս Թուրկուրանցի, զուր կասես, զայլ ոք
խրատես.

Եւթանասուն տարի լցեր ի մեղաց մէջն կացեր ես։„

ԺԶ դարու բանաստեղծ Գրիգոր Աղթամարցին, որը սիրում էր պարծենալ իւր լեզուաբանական գիտութիւններով, եւ բանաստեղծութիւններ էր գրում խառն երեք լեզուներով, մայրենի լեզուով, պարսկերէն եւ տաճկերէն, հոգու մարմնից անջատուելուն մի բանաստեղծութիւն է նուիրել, այս անգամին հայ լեզուով, որը ձռգրում[1] խորագրուած է այսպէս "Գեղեցիկ Տաղ հոգու եւ մարմնի այգու վերայ։„

---

[1] Էջմ. Թիւ 86, ԺԹ, 12a Թ. Տաղ գեղեցիկ ի վերայ այգոյ հոգւոյ եւ մարմնոյ։ Այս բանաստեղծութիւնը տպագրուած է Հայոց ժողովրդական երգերի Թւում (Armen. popular Songs by the P. Leo M. Alishan. Venice 1852 Թ. pp. 18—25), բայց մի ուրիշ օրինակում առանց հեղինակի անուան եւ ըստ երեւութին սրբագրուած ուղղագրութեամբ։

“Ամէն առաւաւտ եւ լոյս
Պըլպուլն ասէր· եւ այգուս.
Զեմ ելներ ես այս յայգուս.
Ցայս իմ Նորայտունկ այգուս:
Քար իմ(-եմ) բերեմ(-եր) գետերուս.
Փուշ եմ բերեմ(-եր) սարերուս.
Ցանկ եմ շիներ այս այգուս.
Ինչպէս ելնեմ ես յայս յայգուս.
Ցայս իմ Նորայտունկ այգուս:

Տունկ եմ տնկեր այս յայգուս.
Տունկ եմ բերեմ(-եր) այս այգուս.
Դեռ չեմ կերեմ(-եր) այս պտղուս.
Այս իմ Նորայտունկ այգուս:

Մէջն է ծաղկեր այս յայգույս.
Կարմիր սպիտակ վարդույս.
Դեռ հոտ չեմ առեր վարդույս.
Այս իմ Նորայշէն տնկուս(°).
Ինչպէս ելնում ես այս յայգուս.
Ցայս իմ Նորայտունկ այգույս:

[Հ]ընձան իմ(եմ) փորեր այգույս.
Կարաս եմ լցեր գինուս:
Դեռ չեմ խմեր այս գինուս.
Կասեն թէ արեկ եւ յայգուս.
Ինչպէս ելնեմ ես յայս յայգուս.
Այս [իմ Նորայտունկ այգույս]:

Հրեշտակն եկ խնդիրն հոգուս.
Ցահէն կապեցաւ լեզուս.
Կասեն թէ արեկ եւ յայգուս.
Ինչպէս ելնեմ ես յայս յայգուս.
Այս իմ Նորայտունկ այգուս:

Տանին ի յեզեր հողոյն.
Դնեն զիս ի մէջ հողույս.
Ծաղկունքն վերանան յայգույս.
Այս իմ Նորայտունկ այգույս.
Ահայ որ ելա[յ ես յայգուս]:”

Յատկապէս հոգու եւ մարմնի վէճի շարժառիթը մենք մշակուած ենք գտնում Հայ բանաստեղծ Բուդաղօղլու մօտ, որն ինձ յայտնի է միայն ստորեւ առաջ բերուած տաղից „Հոգու մասին" (Տաղ վասն հոգոյ ասացել է)։ Այս Տաղը գտնւում է մի վեցիջեան ձեռագրում in-12° (Աս. Թանգ. Թիւ 3, այլ է քարոզների ձեռագրից, որ նոյն թուահամարն ունի)։ Հեղինակը կոչում է իրեն՝ վերջին տունի մէջ Բուդաղօղլի Ղազեխն, որի մէջ բացի դորանից գանգատւում է իւր մեղաւորութեան վերայ, խնդրում է ընթերցողներին եւ ունկնդիրներին Հայր Մեր ասել եւ յիշել իրեն աղօթքի մէջ, եւ վերջապէս իւր յոյսը դնում է Աստուծոյ ողորմածութեան վերայ։ Ձեռագրի վերջում բնագրի գրութեան ձեւով (նօտրգիր) գրուած է մի աղօթք, շատ կարելի է ոչ պատահմամբ հոգու եւ մարմնի անջատման մասին ոտանաւորի մօտ։

„Յանուն Հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ ամէն. եւ յետոյ մտուցցանել առ աստուած յաղօթս հետեւեցեալս. Ողջոյն քեզ Մարիամ լի շնորօք տէր ընդ քեզ օրհնեալ ես դու ի կանայս եւ օրհնեալ է պտուղ օրուայնի քո Յիսուս սուրբ կոյս Մարիեամ մայր աստուծոյ. բարեխօսեայ վասն մեր մեղաւորացս այժմ։"

Դժուար է ասել, թէ արդեօք օգտուե՞լ է բանաստեղծը իւր ոտանաւորի համար հոգու եւ մարմնի վէճի մի որ եւ է հայ արձակ քերթուածով՝ թէ սիւժետը փոխ է առել անմիջապէս օտարալեզու աղբիւրից։ Օտար[1] բառերի նկատելի առատութիւնը, Աբդուլլայ դերվիշի յիշատակութիւնը եւ Աղէքսանդրին Իսկանդէր կոչելը դեռ եւս ոչինչ չի ապացուցանում։

[1] Բառերի մեծամասնութիւնը արաբական ծագում ունին, երկու երեքը պարսիկական, սակայն նոքա ամէնքն էլ գործ են ածւում եւ տաճիկ լեզւում։

Հայոց աշուղների — ժողովրդական երգիչների մօտ — այդ մի հասարակ երեւոյթ է. բացի դորանից մեր բանաստեղծը Տաճկահայ կարող էր լինել. ինքը հայ-հեղինակը իրեն Բուդաղեան չէ կոչում, այլ Բուդաղօղլի, այսինքն տաճկական ազգանուան ձեւով: Սակայն ոտանաւորը, դատելով լեզուից, հնութեամբ կարող չէ պարծենալ. իսկ նորա արտագր. օրինակը հազիւ թէ միադարեան լինի. օրինակը լի է ժողովրդական ուղղագրութեան նմուշներով եւ տեղ տեղ կատարեալ անգրագիտութիւն է ցոյց տալիս. գործն դժուարանում է նաեւ առաջին թերթի այսինքն առաջին երկու էջերի վնասուած լինելուց: Ի նկատի առնելով այս հանգամանքները ես ձեւակերպում եմ ձռգրի բնագիրը՝ ուղղելով մինչեւ անգամ սխալները, իսկ իմ կարծիքները եւ մեկնութիւնները ես զետեղում եմ փակագծերի կամ բնագրի եւ թարգմանութեան ծանօթութիւնների մէջ. ես, ի հարկէ, հեռու եմ այն մտից, թէ իմ բոլոր կարծիքները կարող եմ լիովին յաջող համարել: Համարատելը ինձ է պատկանում, բայց տուները անփոփոխ են, ինչպէս այստեղ, ձռգրում. այն բաց տեղերը, որոնք ես չկարողացայ լրացնել, նշանակուած են հարցական նշանով ուղիղ փակագծերի մէջ:

1. Հոգին մարմնուն. “Աղբեր„ [, ասաց,]
“Շուր կու գան[ք] աշխար զհետ իրաց,
Դատել եմք շատ մալ-խազինայ[1].
Մեղք ու վարց կշեռն է գրած:„
2. Հոգին մարմնին ասաց.
“Միաբան ը[նչուր եմ]ք հետ իրաց (իրերաց).
Ծունր ածեմք, աղօթք անեմք,
Թողութիւն խնդրեմք մեր մեղաց:„
3. Մարմինն ի հոգին անց.
“Դեռ մանուկ եմ, հետեր մանկանց

---

[1] مال خزينه

Նստեմք, ուտեմք ու խմեմք,
Մի զմի սիրով՝ ենք սիրած։„

4. Հոգին մա̃ր ան̃յց.
“Դու արթուն կաց, դու իմաց.
Գնա մուտ եկեղեցո [°      ].
Ծունր ածէ, դու քոյ մեղքն լաց։„

5. Մա̃ր ի հոգին ասաց.
“Աշխատել պի[տիմք] շոր ու հաց.
Նստեմք, ուտեմք ու խմեմք,
Շոր հագեմք, շուռ գամք զարդարած։„

6. Հոգին մա̃րին ասաց.
“Քեզ խրատ մի [տամ]. խելաց կաց.
Մի կեր հաց. մի հ[աց]   ,
Խնդրէ որ տաց ախքատաց[1]։„

7. Մա̃ր ի հոգին ան̃ց,
“Ամարաթ[2] է շթ[շտապ հաստա̊ծ].
Ապա հետ աղկատ [մա̊րդկաց]
Սրտով ուտեմք աղ ու հաց։„

8. Հոգին մա̃րին ան̃յ.
“Դու անգէտ ես՝ անիմաց.
Թէ ապրես 100 տարի,
Քանց առաջ մեռած ես՝ մեռած։„

9. Մա̃ր ի հոգին ան̃յ.
“Դեռ թվլինքն մեր չէ կատարած.
Թէ ապրեմ 100 տարի,
100 էլ խնդիրք եմ արած։„

10. Հոգին մի̃ն ան̃յ.
“Հանտիպէ հանկարծակաց.

---

[1] Ես այդպէս եմ լրացնում այդ ջնջուած տեղը, նշմարելով նորա մէջ աւետարանի ուսման թոյլ արձագանգը, նոյնպէս եւ մօտեցնելով հայկական այս առածին՝ Մուրամ մուրամ մուրացկանի տամ. (Ա. Ճուլարտեան, Առածք ազ-գային. Վենետիկ, 1880 թ. էջ 26)։

[2] Ամարաթ = عمارة

Ելնես տափ ու 'սար[1] ընկնես.
Աղաչես դու հրեշտակաց:„

11. Մ՟ր ի հոգին ասաց.
“Թէ նման ես հրեշտակաց.
Պիտի իմ կամաւ լինես.
Ամանաթ[2] ք[եզ] ինձ է տված:„

[12. Հոգի ի] մ՟ր ասաց.
“Ամանաթդ պահիր ձեռաց.
[Աւանդել] պիտիս տիրուն
Ո՞չ նա քես (քեզ) է տված.
[Մի] պահիր(-եր) պղնձի նման
Ժանգոտած[3] [°        ] է գձած.
Պահիր դու ոսկու նման
[Խնամա]ծ, շորով փաթաթած:„

[13. Մ՟ար ի հոգին] ասաց.
“Դեռ խորուրդն իմ չէ [կատարա]ծ.
Ունեմ շատ դուստր որդի,
[Ունեմ շատ] մալ խազինայ.
Խազինին [դուռն եմ] բացած:„

[14. Հոգին ի մ՟ար ասաց].
“Քան զքեզ մեծ թագաւորաց
Դուստր, որդին, մալ խազինէն
Անտ՟ր մնացած:„

15. Մա՟ր ի հոգին ասաց.
“Գին տված[4] փողով եմ գնաց (գնած).
Ունեմ շատ քօշք ու սահրայ[5].
Արծաթով, ոսկով է ծեփած:„

---

1 تاب وسار պարս.:

2 امانت

3 Ձեռգրում “ժանգոտած.„ “գձած„ փոխանակ “գձձած:„

4 “Գին տալ„ եւ “դնել„ հոգին փրկել, ազատել մըտ-քով յաճախ է պատահում, ի միջի այլոց մի քարոզի հե-տեւեալ հատուածում. (Քարոզ) ի բան մարգարէին որ ասէ. որպէս իժի եւ քարբի զի խցեալ է զականջս իւր (Ձեռգր. Աս. թանգ. թիւ 3, բ 10a թ) եւայլն:

5 كوشك وسراى

16. Հոգին ի մ՟ն անց.
«Դու իշխա՞ն ես փառաւորյաց.
Գնայ՝ մէկ սահրայ շինէ.
Որ կենաս զորի յաւիտեան.
Գնայ մի կարմունճ կապէ.
Դու մազէ կարմուճն[1] ես անցկացած:»
17. Մ՟ն ի հոգին անց.
«Շատ ապրանք ունեմ աշխատած.
Արի, իմ տխմար հոգի.
Ջի՞ն[չ] գիտես, ընչով եմ դատած:»
18. Հոգին ի մ՟ն անց.
«Սուտ սած (սաած). ողորդով ես դատած.
Ո՞ւր այ հայրն Ղարունին ապարանքն.
Ձեռնէն գնաց:
Ո՞ւր այ դարվիշ[2] Ապդօլին,
Իւր հմար դրախտն էր շին[ա]ծ
Կամ Թարայ Թագավորին,
Կուքներ ա՟ծ էր արած:
Արի, իմ տխմար մարմին.
Բեր տեսնեն[ք]. աշխարումն մնա՞ց.
Չի մնաց՝ Աբրիհամու[ն],
Որ Սահակ մատաղ էր տված.
Չի մնաց որդուն Դավթի
Սողոմոն[ին, որ] տաճարն էր շինած.
Չի մնաց Իսկանդարին.
Որ աշխարս զաւթ[3] էր արած.
Մեռաւ, փոշիման[4] գնաց

[1] Այլէկ դայեակը ժողովրդական հեքիաթների յայտնի հաւաքիչ Գ. Սրուանձտեանի մօտ (Մանանայ. Կ. Պօլիս 1876, էջ 89) պատմում է մազէ կամուրջի մասին, որ անց է կացրած կրակէ գետի վերայով. կամուրջի այն կողմը գտնւում է Դրախտը, այս կողմը — Դժոխքը: Այլէկի ամբողջ պատմութիւնը (ib. էջ 88—89) կրում է անվաւերական տեսիլների ազդեցութեան ակնյայտնի հետքերը:

[2] درویش պարս.:

[3] ضبط

[4] پشیمان պարս.:

Ի(ի՜նչպէս) մարդն որ կոտն[1] էր ցանած՝.
Դու չես ավկատալ ինձի.
Գնայ մօտ կարքաւորաց՝
Աստուծոյ բանքերն (բանք են) օրինած.
Մի երթ.ալ հարամ[2] ուտել,
Քանի կայ հալալն[3] դրած.
Մի երթալ ընկեր զրկել,
Ընկերի զրկօղն է զրկած.
Մի երթալ բապաանել
Դրկցէտ հետ[4] օտար մարդկաց.
Մի երթալ մարդու ղամղել
Մեծունած մօտն աւանած։
19. Դու լի՛լըժին-լային[5] ես Ուդայինման.
Կայենին, անակն անիծած.
Արի, իմ տխմար մարմին.
Դու լսէ թէ ինչ եմ ասած։„
20. Մ՜րն ի հոգին ասաց.
"Ինչ ասիր, մտնէս գնաս.
Թէ մէկ, թէ հազար ասես,
Կու թվի. իսկի չեմ լսած[6]։
21. Դեռ պիտի ուտեմք ու խմեմք.
Ինչ ապրանք ունեն[ք] աշխատած.
Դեռ պիտի սաֆալ[7] քաղեմք.
Դեռ կամքն իմ չէ կատարած։„

---

[1] Տեղն ինձ աղաւաղուած է թուում. կոտն ես հասկանում եմ կուտնի մտքով։ Գուցէ բանաստեղծը ակնարկում է աւետարանի որոման առակի կամ Վարդանի առակի վերայ (Ձռգր. Բերլինի Արք. Մատենադարանի, Ms. or Minut. 273) տխուր ճակատագրի մասին, որ հասել է մարդուն, որը դժնիկ է անկել եւ փուշ սերմանել։

[2] حرام

[3] حلال

[4] Ձռգրում "հեա։„

[5] Լ[այ]ի[ն] = لعين

[6] Հմմտ. Մէկ ականջէս մտաւ, մէկալէն ելաւ առածը. (Ս. Ճուլարտեան, Առածք Ազգայինք. Վենետիկ 1880. թ. էջ 109.)

[7] صفا

22. Մր̃ն ի հոգին աս̃ց.
"Ես քեզի փոքրուծ ե[մ]պահած.
Պահել եմ մէջ ղափաս[ի]տ[1]
Սունուցած, չեմ թուացուցած.
Հմիկս ճնճղկի նման
Դու թռած, ծառին ես նստած.
Ձես գալ քո բնիդ վերայ.
Աւերած խափաստ է՝ քանդած։"

23. Հոգին ի մր̃ն աս̃ց.
"Կուլթվենք, աղբէր, բաժանած.
Էտ քոյ անիւն[2] մալտ, տեսնեմ,
Դու ինձ ինչ ես տված.
Ոչ ունեմ դայեկան ձեռխ
Խէր արած, վարձուց բաժա[նա]ծ։"

24. Մարմին ի հոգին աս̃ց.
"Բիէֆայ[3] աղբէր ես կանգնաց
Թողեր ես ինձի, կերթաս.
Կուլթվի օր մի չես տեհած[4].
Պահիկ մի մօլաթ[5] արայ.
Համբորեմ ես քես կարօտած,
Ընչուրի հաւատամին
Քհանէն կարքն կատարած։"

25. Հոգին ի մարմինն աս̃ց.
"Ես քէն եմ հետ քես՝ խռօված.
Թողեր եմ, դարտակ կերթամ
Անպաշար ճամփէս մոլորած.
Երթամ ես ղարի[6] աշխարհ.
Երբ ջունեմ ես տուն մի շինած,

---

[1] قفس եւ սորեւ՝ խէր = خیر
[2] Ըստ երեւութին փոխանակ Անհուն, ինչպէս սորեւ դայեկան փոխանակ դահեկան։
[3] بیوفا
[4] Տեհած = տեսած կամ տեւած։
[5] محلت
[6] Ղարիբ ° = غريب

Դէմ առնում օտար դուռն,
Զի՞նչ խնդրեմ, ու ոնչիչ[1] չեմ առած։"
26. Մարմինն ի հոգին ասաց.
"Փոշիման եմ ես ի մեղաց.
Թաղվեր ե[մ] խոր ու գնդան.
Ըղտիարս[2] ձեռնէս գնաց.
Գնայ, իմ աղքատ հոգի,
Ես թաղած ու դու մուորած[3]
Ընչուրի դադաստանին.
Այլ աստուած լինի ողորմած։"
27. Հոգի մարմնուն ասաց.
"Վայ ինձ, վայ մեղաւորին.
Տէրն դադաստան կանի.
Ինչ ասեմ կալած եմ, կապած.
Վայ ինձ, վայ մեղաւորին,
Արդարին դրախտն է շինած.
Մեզ համար դժողքն է շինած.
Դժողքն տանջել պիտեմք յաւիտեան։"

## ԺԵ.

Խօսելով Գրիգոր Աղթամարցու մասին, ես յիշատակեցի նորա սովորութիւնը պաճուճել հայ ոտանաւորները թաճկերէն եւ պարսկերէն ամբողջ տողերով եւ երկտողեաններով (distique)։ Բոլորովին ուրիշ բան է, երբ հայ ոտանաւորների մէջ պատահում են պարսկերէն բառեր, որպէս արդէն հայոց շրթունքներում քաղաքացիական իրաւունք ստացածներ, թէպէտ եւ մի որոշ շրջանի միայն, կամ որպէս ստերէոտիպ բանաստեղծական արտայայտութիւններ, փոխ առնուած հայ բանաստեղծներից առանց փոփոխութեան. այդպէս է օր. ք[ա]րֆ, ձիւն պարսկերէն برفից եւ ալմնէ, աշխարայ ա-

[1] Որ ոչ ինչ։
[2] اختيار եւ վերեւը Զնդան = زندان;
[3] Մոլորած կամ շատ կարելի է մուրացած (՞)։

րաբ-պարսկական علانیից, մի բանաստեղծութեան մէջ[1], որ հետաքրքրեց ինձ իւր փոքրացուցիչ կամ փաղաքշական բառերով, ինչպէս՝ սրտիկ, դռնիկ եւ խաբրիկ։

Աչերտ արծաթ է բոփայ.
Պաղ ջրեր ինքն ժողովին.
Ծ՛արվեր եմ. թող ջուր խմեմ.
Կարաւտով՝ չերթամ մեռանիմ։
Սրտիկս երկու դուռն ունի.
Մէկն գաղտուկ. մէկն ալանի.
Կերթամ այն գաղտուկ դռնիկն.
Կու կանչեմ խաբրիկ ալանի։
Ով որ սպիտակ ծոց ունի.
Թող ապրի շապիկ հագանի.
Ջկոճակն ի վերայ շարէ.
Շատ մանկան լեղի պատառի։
Ոչ ի այրն (°) Ներկած հագանի.

---

[1] Էջմ. Ձռգր. Թիւ 103ի վերջում. 123 Թ. in-20։ Գրութիւնը 10, 8×7, 2 հղրմ.։ — Տող. 20։ — Թուահամարները. հայ տառերով իւրաքանչիւր 22 թերթից յետոյ։ — Թուղթը. հաստ, դեղնկեկ, մոմած։ — Գիրը. բոլորգիր։ — Զարդերը. գունագեղ զարդագրեր կապուած մանրանկարների հետ լուսանցքների վրայ, խորանք թերթերի ճակատին (4a, 48a եւ 79b Թ)։ — Կազմը. տախտակեայ, կաշու վրայ կոխած ձեւանկարներ։ — Վիճակ. կազմը խախտուած է, թերթերը քայքայուել են, սկզբից պակասում է 12 թերթ։ — Արտագրչի անունը եւ թուահամարը եւս չգտայ։ Բովանդակութիւնը. 1. Յաղագիրք (1a—4a Թ) սկզբից թերի. 2. Պատմութիւն Յովսափու, ոտանաւոր աղբիւր Առաքել Բիթլիսեցու (4b—48b Թ). 3. Պատմութիւն սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին, ոտանաւոր, նոյնպէս Առաքելի (49a—78b Թ). 4. Բանաստեղծութիւն, նուիրուած Ներսէս պատրիարքին, առանց վերնագրի (79b—91a Թ). 5. Պատմութիւն Մարխայի եւ Գասպարի կամ, ըստ այլ իմ մօտ գտնուած արտագրուած օրինակին, Կոստանդի, Սսեցի վաճառականների, նոյնպէս անվերնագիր (91a—98b Թ). այս Յակոբ Արծկէացու ոտանաւոր հոգեշահ պատմութիւնն է, թէ ինչպէս կրակապաշտ Գասպարը քրիստոնէութիւն ընդունեց. եւ 6. Բանաստեղծութիւններ մի ամբողջ խումբ հայ բանաստեղծների. Գրիգոր Աղթամարցու, Աստուածատուր Հենեցու, Մարտիրոս Հեզանցու, Նաբեկացու, Կոստանդի եւ այլն (98b—123 Թ.)։

Ոչ մանկան լեղին պատառի.
Կերթամ կանիծեմ էն ակն.
Որ լեղակն իւրմէ կելնի։

Սէր դէպի փաղաքշական խօսքերը իկ վերջաւորութեամբ մենք նկատում ենք արդէն Հայոց հին ժողովրդական երգերում, որոնք պահպանեց մեզ համար Մ. Խորենացին, այդպէս կարմրիկ, եղեգնիկ, պատանեկիկ (I, լա) եւ, այսօր ըստ Սանահնի արտագրուած օրինակին, "տեղեկիկ" փոխանակ տեղի (I, Լ), նոյնպէս "Սարթենիկ" (I, Լ. եւ II, ծ) եւ, թերեւս, "գեղեցիկ" Արտաշէսի վերայ գրուած ոտանաւորի մէջ (II, ծ)։

Հեծաւ արի Արտաշէս[1]
Ի սեաւըն գեղեցիկ եւն։

ԺԶ.

Վերջացնելով խօսքս, չեմ կարող չյայտնել իմ ցաւը, որ մի քանի Հայ հրատարակութիւններ, մանաւանդ հնատիպներն ու արտասահմանեանները, անմատչելի էին ինձ այս նկատողութիւնները կազմելիս. այսպէս զոր. ես այժմ միայն միջոց գտայ ծանօթանալու Բաղաամի եւ Յովասափի պատմութեան տպագիր արձակ բնագրի հետ ըստ Սինակսարի, որը նորերս մտաւ կայս. Հաս. Մատենադարանը մի տասնեակ ուրիշ Հայ հնատիպ գրքերի հետ միասին. տպագիր հրատարակութեան մէջ նոյնպէս պահպանուած է թարգմանիչ Ասատի յիշատակարանը (գլ. Ա)։ Յովասափի եւ Ասանէթի պատմութեան Հայ թարգմանութեան մասին նկատողութիւնս կազմելիս (գլ. Թ) ես չկարողացայ օգտուել Հ. Բատիֆֆօլի աշխատութիւնից, որը վերաբերում է այդ առարկային. Studia Patristica, Études

[1] Ես դուրս ձգեցի բնագրից արքայ բառը, որպէս եօթնատեան չափը խանգարող. նա, ըստ երեւութին, պատմաբանի բացատրութիւնն է։

d'ancienne littérature chrétienne par P. Batiffol. I. fasc. Le livre de la prière d'Aseneth. in-8º 1889։ Այդ գիրքը դժբախտաբար այժմ էլ չկարողացայ ձեռք բերել։ Գրիգոր Տաթեւացու շարադրութեան միջից հանուած հատուածը, որն ես յառաջ եմ բերել Զ. գլխի վերջընթեր նկատողութեան մէջ, արդէն տպագրուած է Ղ. Փիրղամալեանի մօտ (Նօտարք Հայոց եւն. Պօլիս. 1880. էջ 27) բայց այլ թուականով եւ ըստ այլ ձեռագրի։ Կարեւոր եմ համարում նոյնպէս Յիսուսի Մանկութեան պատմութեան մէջ գտնուող "տախտակ" բառի թարգմանութիւնը լրացնել (էջ 50) ես թարգմանել եմ доска բառով, աւելի պարզ կլինի, եթէ "տախտակ"ը այդ տեղ հասկանանք փոքրիկ տախտի՝ այսինքն գահի մտքով։

Ներկայ թերթս տպագրուած էր արդէն, երբ ստացուեցաւ Ամսօրեայ Հանդիսի օգոստոսի համարը, ուր Սուտ-Կալիսթենէսի Աղեքսանդր Մակեդոնացու Պատմութեան մասին գրուած հետաքննին էտիւդներում, 229 էջի վերայ, յառաջ են՝ բերուած Խաչատուր Կեչառուեցու ոտանաւորները, որոնք ունին շատ նմանութիւն ըստ ոգուն եւ ըստ ոճին ոտանաւոր Հոգու եւ Մարմնի վէճի հետ (տես վերեւը էջ 71)։ Նոյն յօդուածից իմացայ, որ Խաչատուրի մի քանի բանաստեղծութիւնները տպագրուած են Հ. Ղեւոնդ Ալիշանի մօտ Այրարատի Նկարագրութեան մէջ (Վենետիկ. 1890), շատ կարելի է, որ նոցա թուում գտնվում է նոյնպէս այն բանաստեղծութիւնը, որն ես յառաջ եմ բերել ԷՋՄ. թիւ 86 ձեռագրից հանած քաղուածում։

Բազմահմուտ հայերէնագիտի աշխատութիւնը դեռ եւս չկայ ոչ Համալսարանի մատենադարանում, ոչ Հասարակացում եւ ոչ էլ Ասիական Թանգարանում։

Մի քանի պատճառներով, որ մասամբ ցոյց եմ տուել ստորեւ, մտցնում եմ այս գլխի մէջ

տարբեր ընթերցուածներ Մ. Խորենացու Պատմութեան ըստ Սանահնի ձեռագրին, որի տէր սրբազան Սարգիս Գասպարեանին մի անգամ եւս յայտնում եմ խորին շնորհակալութիւնս որ այնքան սիրով շնորհեց ինձ: Յիշուած ձեռագիրը[1] բաղկացած է 289 թերթից (սկզբում երեք թերթ եւ վերջում երեք թերթ պակաս են) in-4°, երկսիւն, իւրաքանչիւրը 17×5, 8 հղրմ., տող 27, մագաղաթի վրայ գրուած, բոլորգիր: Թերթերը Ստ. Ասողիկի Պատմութեան մէջ խառնուած են գրողի յանցանքով, բացի գրիչ Ներսէսի յիշատակարանից որ ձեռագրի վերջումն է, գտնվում են նոյնպէս դարձեալ Նորա ուրիշ երկու յիշատակարանները, մինը ձեռագրի մէջ տեղում, իսկ միւսը Ստ. Ասողիկի Պատմութեան վերջում, բայց նոքա իրականապէս ոչինչ նորութիւն չեն ներկայացնում առաջնին համեմատութեամբ, որն եւ յառաջ է բերուած ստորեւ: Կայ մի յաւելուած գրութիւն 36 թերթի վրայ 1874 թուից, որը հաղորդում է, թէ աւագ քահանայ Դաւիթ Ղահինեանն է նուիրել այդ ձեռագրը այժմուան տիրոջն ի նշան բարեկամութեան: Կայ այլ եւս մի քանի տեղերում յաւելուած գրութիւն 1885 թուից Մեսրոպ Սմբատեան Նախիջեւանցի եպիսկոպոսի ձեռքով: — Բովանդակութիւն: Ա. Մովսիսի Խորենացւոյ Յաղագս մերոյ սկզբանն. Ամ բանիցս Սահակայ Բագրատանւոյ խնդրաւղ (5a—128a թ.) Բ. Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն՝ Տիեզերական (129a—221b թ.). Գ. Պատմութիւն ըռստակէսի Լաստիվերցոյ վարդապետի: Վասն անցից ան[ց]ելոց ի յայլասեռ ազգաց որ շուրջ մեւք են: Անց[ք] ընդ աշխարհս հայոց (222a—276a թ.) եւ Դ. Մովսիսի Խորենացւոյ ասացեալ է երկրաչափ յաղագս աշխարհագրութեան տիեզերաց (277b—286a թ): Ահա ձեռագրի վերջում գրուած յիշատակարանը:

---

[1] Տես ներկայ Նկատողութիւններիս Բ գլուխը:

"Փառք անհասանելի. անճառի. անեղի. անմահի. ամենակարողի. ամենազօրի. եւ արարողի ամենայն էից յանէից՝ հօր եւ որդւոյ եւ հոգւոյն սրբոյ անձամբ եւ դիմօք տրոհեալ. այլ իսկութեամբ անսկզբնութեամբ զօրութեամբ իշխանութեամբ միաւորեալ նմա ա̃հութիւն եւ փառք յամենայն էից ամէն: Որ կարողացոյց զիս զթմրեալս [յ]ամենայն տեսակս մեղացս զանյիշելի եւ զեղկելի մեղսասէր եւ չարագործ Ներսէս սուտանուն. ծրագրել զպատմութիւն թագաւորացն մերոց: Աղաչեմ զձեզ զամենեսե[ա]ն յիշելոյ եւ թողութիւն խնդրելոյ յանոխակ[ալ անյ]իշաչար տեսառնեն (այսօղէս) զծնօղսն զտէր Ազարիայ քահանայն եւ զմայրն իմ Ուղուսալթանն: Ամէն:

Գրեցաւ պատմագիրքս ի յերկիրս Լաւռու ի գեւղս Աւգսորի (°) ի վայելումն Սարգիս ահրեպիսկոպոսին ի սուրբ եւ գերահռչակ ուխտս որ կոչի Սանահին որ է իսկիզբն եւ մայր ամենայն վանորայից ընդ հովանեաւ լուսոյ մաւր սուրբ աստուածածնիս եւ հրաշափառ ամենափրկիչ սուրբ կաթաւղիկէի եւ այլ սրբոցս որ աստ հաւաքեալ կան:„

Սանահնի վանքի վանահայրերի թւում Սարգիս անունով գիտենք միայն մի անձն. այդ Սարգիս եպիսկոպոսն է, Բեբեկի որդին, Արղութեանների ազգատոհմից: 1633 թուին նա նորոգեց Սանահնի տաճարի գմբեթը, որ վնասուել էր սաստիկ երկրաշարժից (Description des Monastères Arméniens d'Haghbat et de Sanahin, par l'archim. Jean de Crimée avec Notes et Appendice par M. Brosset, St. Pet., 1863, p. 77): Այդ տաճարում մի արձանագրութիւն կայ, որ հաստատում է թէ Բեբեկի որդին՝ Սարգիս արքեպիսկոպոսը 1652 թուին վերականգնել է Փրկչի եւ Աստուածամօր տաճարները, Ս. Գրիգորի եկեղեցին, մատուռն ու մասունքների խուցը (Նոյն, էջ 66): 1652 թուից մնացած մի հրովարտակ կայ, որ Վրաց թագաւոր Ռոս-

տոմը յանուն այս եպիսկոպոսին է տուել (Նոյն, էջ 88—88), նորա գերեզմանը գտնվում է Սանահին վանքում Փրկչի եկեղեցու մուտքին մօտ՝ աջ կողմը (Նոյն, էջ 79)։ Ապա ուրեմն մեր յիշած ձեռագրը, որ Սանահնի վանահայր Սարգիս արքեպիսկոպոսի համար է գրուած, ԺԷ դարու կէսին է վերաբերում, թէեւ մագաղաթի վրայ է գրուած։

Ես արդէն առիթ ունեցայ խօսելու այն էական օգնութեան մասին, որ ձեռագրի ու տպագրի համեմատութեան գործին ցոյց տուեց Էջմիածնի միաբաններից մինը՝ Գալուստ Մկրտչեանը։ Համարեա ամէն երեկոյ, երբեմն եւ առաւօտները, հէնց որ առակների ձեռագրերով պարապելս ընդհատում էի, մի քանի ժամ անց էի կացնում այս համակրելի միաբանի սենեակում, ուր կարգով մեզանից մէկը կարդում էր ձեռագրը, իսկ միւսը տարբեր ընթերցուածները նշանակում էր տպագիր հրատարակութեան էջերի վերայ։ Իմ Էջմիածին մնալուս վերջին օրերում, երբ բոլորովին ժամանակ չունէի, միաբան Գալուստ Մկրտչեանը շարունակում էր ձեռագրի ու տպագրի համեմատութիւնը մինակ. օգտուելով սակայն ժամանակ ժամանակ Էջմիածնի մատենադարանապետ Հ. Սահակ Ամատունու գործակցութեամբ։ Այս կերպով բաղդատուեցաւ Մ. Խորենացու Պատմութեան տպագիր բնագիրը Սարգիս եպիսկոպոսի ձեռագրի հետ, որն եւ ծագման տեղին նայելով Սանահնեան կոչեցի։

Սանահնեան օրինակի վարիանտները գլխաւորապէս կարեւոր են սկզբնագրի տառերի նկատմամբ[1]. ապա՝ թէեւ տարբեր ընթերցուածների մեծ

[1] Գլխաւորապէս Սանահնեան օրինակի վերայ հիմնուելով՝ Միաբանը (կեղծանուն) բաւական հետաքննին հետեւանքների հասաւ նկատմամբ հին հայոց մատենագրական յիշատակարանների վերանորոգութեան արտագրողների ձեռքով. այս հետեւանքները՝ Մովսէս Խորենացու պատմութեան վերայ արած ուրիշ հետաքնին նկատողութիւնների հետ ամփոփուած են մի քանի յօդուածների մէջ, որ տպագրուած են 1890 եւ 1891 թուի "Արարատ„ հայ ամսագրում։

մասը կամ գրչի եւ կամ պարզաբար սխալ է, բայց յաճախ դրանք էլ հնէագրութեան նկատմամբ բաւականեան կը տան. մի քանի դէպքեր, զոր զօր. — եւ մ տառերը այնտեղ, ուր սպասելի էր ի եւ փ, ինչպէս “Պուամու„ եւ “Տեւմամոս„ (էջ 92,5 եւ 65,9) ցոյց են տալիս թէ սկզբնագիրը գրուած էր երկաթագրով, ուր միայն կարելի է այս տառերի շփոթումը։ Պէտք չէ ամենեւին հաւատ ընծայել այն վարիանտներին, որոնք կարող էին գրողի անուշադրութիւնից սպրդել, տառեր, վանկեր, բառեր եւ ամբողջ հատուածներ բաց թողնելով, կամ սխալ կարդալով պատուով բառերը՝ մանաւանդ Ըէ—Ն, Ըէ—ՆՆ, Ըէան, Ըէանն եւայլն։ Սակայն այսպիսի դիտողութիւններ ամէն ոք կարող է անել, աչքէ անցնելով յետագայ ցուցակը. իսկ բոլոր ընթերցուածների պաշաճաւոր գնահատութեան համար, որքան որ հնարաւոր է այժմս, կան աւելի ձեռնհաս անձինք, որոնք Մովսէս Խորենացու պատմութեան ուսումնասիրութեան ամբողջ տարիներ են նուիրել. այդպիսիների ձեռքը Սանահնեան օրինակի վարիանտները շուտով տալու համար ես որոշեցի նրանց զետեղել առաջիկայ նկատողութիւններիս[1] մէջ։ Ձեռգրի հետ բաղդատուած է Տփխիսի 1881 թուի տպագիրը[2], որ

[1] Մեր ներկայ հրատարակութեան մէջ զանց առնուած են այս համեմատութիւնք, զորոնք կարելի է տեսնել ռուսերէն բնագրին վերջը դրուած: Այս համեմատութիւնն գործքին մեծ մասը կը կազմէ, (էջ 46—94), ուր Խորենացւոյ գրոց Տփղիսի տպագրութեան էջերու եւ տողերու կարգաւ նշանակուած են առանձին սիւնակներու մէջ յիշեալ ձեռագրին տարբերութիւնք: Այս տարբերութիւնք բաւական շատ են եւ կարեւոր, զորոնք Խորենացւոյ գործքին քննողք պէտք չեն անտես ընել:

[2] Հետեւաբար այս հրատարակութեան համեմատ տարբեր ընթերցուածների մօտ ցոյց են տրուած էջեր եւ տողեր. վերջիններս պէտք է համարել ներքեւից, երբ թուանշանի առաջ նուազական է դրուած։

լաւագոյններից մէկն լինելով հանդերձ, միանգամայն հանրամատչելի է։ Ուրեք ուրեք պատահում էին վարիանտներ, որոնք արդէն Սանահնի ձուգրից անկախ՝ ցոյց են տրուած վենետիկեան հրատարակութեան, ինչպէս եւ Կարինեանի աշխատութեան (Թաղդատութիւն եւն. Տփխիս 1858) մէջ. մենք բոլորն էլ մոցրել ենք մեր ցուցակում։



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ԼԵՀԱՀԱՅՈՑ ԴԱՏԱՍՏԱՆԱԳՐՈՑՆ . . . . . ֆր. 1.25

Բ. ԱԶԳԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԱԶՆՈՒԱԿԱՆ ԶԱՐՄԻՆ ՏԻՒԶԵԱՆՑ . . . . . . ֆր. 1.—

Գ. ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ ԱՌ ԳԷՈՐԳԱՅ ԱՍՈՐԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ ԳՐՈՑ ֆր. 1.25

Դ. ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՅՔ Ի ՊՈՒՔՈՎԻՆԱ ֆր. —.85

Ե. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ ՍՏՈՅՆ-ԿԱԼԻՍԹԵՆԵԱՅ ՎԱՐՈՒՑ ԱՂԵՔՍԱՆԴՐԻ . . . . . . . . . . . . ֆր. 3.—

Զ. ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՓՈՔՐ ԱՍԻԱ ֆր. 1.—

Է. ԱՄԱՌՆԱՅԻՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆԻՑ ԴԷՊ Ի ՀԱՅՍ . . . . . . . . ֆր. 1.25



